# ԻԼՅԻՉԻ ԼՈՒՅՍԵՐԸ

*ԱՐՏԱՇԵՍ ՓՈՂՈՍՅԱՆ*

*Նկ. Վ. ԿԱԺՈՅԱՆԻ*

Երբ կարմրում է հորիզոնն անձայր,
Երբ առավոտն է բացվում հուրհրան,
Դա մեծ Լենինի դրոշն է պայծառ,
Որ ծածանվում է աշխարհի վրա:

Երբ տարածվում է միջօրեն մեր ջինջ,
Ջուգում դաշտ ու ձոր, այգի ու պարտեզ,
Դա հրավառվող սիրտն է Իլյիչի,
Որ ամեն վայրկյան ջերմացնում է մեզ:

Երբ որ լամպերն են գիշերը անվերջ
Շուրջը տարածում արև, կյանք ու սեր,
Դրանք լենինյան երազներն են պերճ,
Որ անվանում ենք Իլյիչի լույսեր:




*Լենինի—Ստալինի գործի պայքարին եղի՛ր պատրաստ*

№ 1

ՀՈՒՆՎԱՐ

1954 Թ. ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 26-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ԵՎ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## ՎԼԱԴԻՄԻՐ ԻԼՅԻՉ ԼԵՆԻՆ

# ԼԵՆԻՆԻ ՆԱՄԱԿԸ

Մ. ԲՈԼՇԻՆՑՈՎ ԵՎ Մ. ՋԻԱՈՒՐԵԼԻ

Հուլիս ամսվա մի շոգ առավոտ, Պետրոգրադից եկող արվարձանային գնացքը ամառանոցային փոքրիկ կայարան հասավ։ Վագոններից կառամատույց իջան շատ մարդիկ և նրանց հետ՝ մի զինվոր, մի շատ սովորական զինվոր։ Նույնիսկ կառամատույցում գտնվող խուզարկուն, որը համարյա ամեն մի զինվորի և վատ հագնված մարդու կասկածում, բոլշևիկ էր համարում, այդ զինվորի վրա ոչ մի ուշադրություն չդարձրեց։



...ճախրեցեք, բազեներ...

Սակայն, այն սպան, որը մի խումբ յունկերների հետ կայարանում հերթապահություն էր անում, այնուամենայնիվ, զինվորի փաստաթուղթն ստուգեց։ Հուլիսյան այդ տագնապալից օրերին, կայարաններում բոլոր զինվորների փաստաթղթերն ստուգում էին։

— Ազգանունդ ի՞նչ է։

— Երշով, պարո՛ն պորուչիկ,— սպայի առջև ձգվելով պատասխանեց զինվորը։

— Իսկ ինչո՞ւ ես այստեղ եկել,— հարցրեց սպան։

— Սիրտս ձուկ է ուզում, պարո՛ն պորուչիկ,— անկեղծորեն պատասխանեց զինվորը.— քեռիս այստեղ՝ լճի մոտ ձուկ է որսում։

— Դե գնա,— ողորմաբար թույլատրեց սպան։

Երշովը շրջվեց ինչպես կարգն է և քայլեց դեպի անտառը տանող ճանապարհով։ Նա գնում էր զինվորի չափած քայլերով և քթի տակ երգ էր մռմռում.

Ճախրեցեք, բազեներ,
Որպես արծիվներ,
Բավական է վշտացաք...

Երգն այնքան զվարթ էր, զինվորի տեսքն այնքան անվրդով, որ ոչ ոքի մտքովն անգամ չէր անցնի, թե ինչպես էր վրդովվում, ինչպես էր հուզվում պետրոգրադցի բոլշևիկ Վասիլի Տիմոֆեևիչ Երշովը։ Նա ամբողջ ժամանակ անհանգստանում էր, երբ Պետրոգրադում գնացք էր նստում, երբ գտնվում էր վագոնում, և հատկապես, երբ սպան նրա փաստաթուղթն էր ստուգում։ Մինչև անգամ այժմ՝ անտառում, նա անհանգստանում էր. գուցե իրեն հետևո՞ւմ են։

Բոլշևիկ Երշովին հանձնարարված էր ընկեր Ստալինի նամակը հասցնել Վլադիմիր Իլյիչ Լենինին, որը թաքնված էր այդ վայրերում։

Մեծ ու խաղաղ լիճը թաքնված էր անտառի խորքում։ Երշովը պետք է լճի մյուս ափն անցներ։ Նրան նավակ տվեցին ամռանն այստեղ մի խարխուլ սրահատնում ապրող ձկնորսները։ Այդ ձկնորսները հավատարիմ ու փորձված ընկերներ էին։ Նրանց կարելի էր վստահել։ Ոչ ոք աննկատելի կերպով լճի մյուս ափն անցնել չէր կարող. օտար մարդու նավակ չէին տա։

— Մենք միայն մի նավակ ունենք, այն էլ ծակված է, կխեղդվեք,— մռայլ տեսք ընդունելով, վախեցնելու համար ասում էին ձկնորսներն այն մարդկանց, որոնք նավակ էին խնդրում։ Եվ բոլորն էլ, իհարկե, հրաժարվում էին. ո՞վ կուզենար խեղդվել։

Երշովը թիավարում էր ձկնորսի նման, դանդաղ, ուժեղ մղումներով։ Անվնաս, հուսալի կերպով ձյութված նավակը թեթևակի սահում էր ջրի վրայով։

Մոտենալով ցածրիկ, անմարդաբնակ ափին, Երշովը նավակից դուրս եկավ, նավակը թաքցրեց եղեգների մեջ, չորացած, ծռմռված կեչուց մի գավազան պոկեց և սկսեց քայլել կածանով։

Անտառի ծայրին մի խոտառատ բացատ կար։ Քիչ հեռու՝ ճյուղերով, եղեգնով, տերևներով ծածկված հուլիկն էր։ Նրա մուտքի մոտ մի լայն կոճղ կար, որը գրքի վրա թեքված Վլադիմիր Իլյիչի համար իբրև սեղան էր ծառայում։ Լենինը կարդում էր մատիտը ձեռքին բռնած, հաճախ գրքի լուսանցքներում նշումներ էր անում, առանձին թղթի վրա արտագրում գրքի անհրաժեշտ տեղերը։

Ոտնաձայն լսելով, Վլադիմիր Իլյիչը աչալուրջ կերպով նայեց հեռուն և միանգամից ճանաչեց բացատով քայլող զինվոր Վասիլի Երշովին։

Լենինը վեր կացավ և, ձեռքը սիրալիր կերպով թափահարելով, ընդառաջ գնաց զինվորին։

— Ա...ա՜, Երշո՛վ...

Այստեղ արդեն Երշովը չհամբերեց և վազեց նրան ընդառաջ։

— Բարև, Վլադիմի՛ր Իլյիչ, —խորը ուրախությամբ համակված, որ տեսնում է Իլյիչին, բարձրաձայն ասաց Երշովը։

— Դուք չեք մոռացել՝ այստեղ ես կոչվում եմ Կոնստանդին Իվանով,— նախազգուշացրեց Վլադիմիր Իլյիչը ամուր սեղմելով նրա ձեռքը։— Թերթեր բերե՞լ եք, ընկեր Ստալինից նամակ բերե՞լ եք։

— Բերել եմ, բերել եմ,—կըրկնեց Երշովը, փոհ նրանով, որ Լենինի հարցերին կարող է դրական պատասխաններ տալ։—Ահա թերթերը, ահա նամակը։

Նրանք մոտեցան հուլիկին։

— Նստեցեք, հանգստացեք, —ցույց տալով բացատում թափված, հենց նոր հնձած խոտը, հրավիրեց Վլադիմիր Իլյիչը։

Իսկ ինքը նստեց իր սեղանի՝ լայն կոճղի մոտ, անհամբերությամբ բացեց ծրարը և սկսեց կարդալ։ Կարդում էր մատիտով զինված, ինչ-որ նշումներ անելով ու ասելով.— «Այդպես, այդպես, լավ է... Ուրեմն համագումարը շարունակվում է... Է՛խ, ի՜նչ անախորժ է, որ ստիպված եմ այստեղ նըստել...»։

Այստեղ Երշովն իրեն թույլատրեց խոսք մեջ գցել.

— Չի կարելի, Վլադիմի՛ր Իլյիչ։ Կերենսկու լրտեսներն ուղղակի ամեն մի քայլափոխում Ձեզ են սպասում։

— Այնուամենայնիվ, անախորժ է։—Վլադիմիր Իլյիչը նորից սկսեց նամակը կարդալ։— Համագումարը շարունակվում է չափազանց բարդ պարագայում,— մտախոհ արտասանեց նա։

Երշովը կարծեց, թե Լենինը իրեն դիմեց։

— Մի՛ անհանգստացեք, Վլադիմիր Իլյիչ, ամեն բան կարգին կլինի։

Վլադիմիր Իլյիչը կռացավ թղթի վրա և սկսեց արագ գրել։ Երշովը հասկացավ, որ նա Ստալինի նամակի պատասխանն է գրում և աչքերը հառած նայում էր Լենինին։



Լենինը կարդում էր...

Լենինը գրում էր։ Երբեմն մտածմունքի մեջ էր ընկնում, աչքերը կկոցում, նայում

*հեռուն, ապա կրկին կռանում նամակի վրա։*

*Նա գրում էր, որ բանվորները, գյուղացիները և զինվորները պետական իշխանությունը պետք է իրենց ձեռքը վերցնեն, որ բոլշևիկների պարտիան պետք է պարզաբանի նրանց այդ խնդիրը։*

*Ինչ որ մի տեղ, սոճու վրա, փայտփորիկը թխթխկացրեց։ Հեռվում՝ արևից տաքացած լճի վրա, դողդողում էր օդը։ Սկսված քամին շարժեց թղթի թերթերը։ Լենինը, ձախ ձեռքը դրեց թերթերի վրա և խոր մտածմունքի մեջ ընկավ…*

*Երշովն իր ամբողջ կյանքում հիշում էր Վլադիմիր Իլյիչին այնպես, ինչպես նա կար այն ժամանակ. բարձր, իմաստուն ճակատ՝ հեռու նայող աչքերի վրա և ձեռքի տակ նամակի, քամուց շարժվող, կարծես կենդանի թերթերը…*

*Թարգմ. Հ. ՀԱՅՐԱՊԵՏՅԱՆ*

---

# Լ Ե Ն Ի Ն

*(Ավարական ժողովրդական երգ)*

Երբ վառվում է արևելքում
Պայծառ ցոլքը ճրակեզ,
Գունատվում են աստղերն երկնում
Հալվում, կորչում սառցի պես:

Գիտուններըն ողջ աշխարհի
Մթագնում են քո դիմաց,
Ինչպես աստղերը երկնքում,
Երբ շողում է լուսաբաց:

Դու առաջինն եկար մեզ մոտ,
Ճանաչեցիր որպես մարդ.
Եվ տվեցիր մեզ հաղթության՝
Մարտում կոփված զենքն անպարտ:

Ու զենքի տակ թաքնվեցին
Մարդիկ և՛ չար, և՛ անգութ,
Այդպես սագերն են թաքնվում
Արծվի ձայնից ահարկու:

*Թարգմ. Հ. ՍԵՎԱՆ*

---

# ՏՆԱԿՆ ԻԼՅԻՉԵՎՈՅՈՒՄ

*Ծովածոցի երկայնքով ձգվում է ծովափնյա խճուղու լայն, ասֆալտապատ ժապավենը։ Սկսվելով Կիրովյան կղզիների մոտից, ճանապարհը մեկ մոտենում է ափին, մեկ էլ հեռանում փշատերև անտառի ձյունապատ թավուտը։ Այստեղ երևում են ամառանոցային ավանների տները, սանատորիաների շենքերը, բուժարանները։*

*Հետևում մնացին Ռազլիվը, Սեստրորեցկը, Սոլնեչնոյեն, Ռեպինոն, Կոմարովոն… Ահա և Զելենոգորսկը՝ կուրորտային շրջանի կենտրոնը։ Թեքվելով դեպի Վերին Վիբորգյան խճուղին գնանք Կարելյան պարանոցի խորքը։ Ահա ճանապարհի մոտի սյունը, որի վրա երկնագույն մի սլաք կա։ Սլաքի վերևը գրված է՝ «Վ. Ի. Լենինի տունթանգարան»։*

*Այստեղից սկսվում է գյուղամիջյան ճանապարհը։ Երբեմնի խուլ այդ կածանով, 1917 թվականի սեպտեմբերի սկզբին, Յալկալա ֆիննական գյուղակն էր գնում Վլադիմիր Իլյիչ Լենինը։ Դա այն ժամանակ էր, երբ մեր պարտիան իր առաջնորդին թաքցնում էր հակաhեղափոխական ժամանակավոր կառավարության հետապնդումներից։ Ռազլիվ լճի այն կողմը ճյուղերից հյուսած հյուղակում անհնար էր դառնում ապրել աշնանը։ Վրա էին հասնում ցրտերը և խոտհնձի վերջանալուց հետո ցույց տալ իրեն որպես հնձվոր, վտանգավոր էր։ Դրա համար էլ Ի. Վ. Ստալինը կազմակերպեց Վլադիմիր Իլյիչի մեկնումը Ֆինլանդիա։ Լենինը Ռազլիվից տեղափոխվեց Ուդելնայա կայարանը, իսկ այնտեղից ծպտված, որպես շոգեքարշի հնոցապան, անցավ Ֆինլանդիայի սահմանը։ Իջնելով Տերիոկի (այժմ Զելենոգորսկ) կայարանում, նա գիշերը հաջողությամբ հասավ Յալկալա։*

*Բլուրների հետևում, լճակների միջև լայն բացատ կա։ Այդտեղ, բարձունքի վրա երև-*



Այն տնակը, որտեղ ապրել է Լենինը։

վում է փայտաշեն մի տնակ, իսկ տնակի առջև՝ պարտեզ։ Տնակի ճակատին փակցրած է մի հուշատախտակ։ 1917 թվականի սեպտեմբերին այս տնակում ապրել և աշխատել է Վ. Ի. Լենինը։

Այն ժամանակ, ավելի քան երեսունհինգ տարի առաջ, փոքրիկ տնակը, որ հետո պատմական մի վայր դարձավ, Յալկալայից բաժանված էր անտառի համատարած շերտով և կանգնած էր սակավաթիվ բնակչություն ունեցող խուլ մի անկյունում։ Այդ ապահով ապաստարանում Վ. Ի. Լենինն ապրում էր Սեստրորեցկի գործարանի բանվոր Կոնստանդին Պետրովիչ Իվանովի անձնագրով։ Նեղ դռներով, ցածր առաստաղով և երկու նեղ լուսամուտներով նրա սենյակը խրճիթին կից էր։

Հիմա սենյակում վերականգնված է այն տարիների կահավորումը։ Ահա երկաթե մահճակալը, թախտը, շախմատի կլոր սեղանիկը, տնային հասարակ սեղանը։ Այդ սեղանի մոտ, նավթի լամպի լույսի տակ, Լենինը Յալկալայում շարունակում էր իր աշխատանքը «Պետություն և ռևոլյուցիա» հանճարեղ գրքի վրա։

Մյուս երկու սենյակներում դասավորված են Վ. Ի. Լենինի թանգարանի նյութերը։ Այդ նյութերը պատմում են այն մասին, թե ինչպես մարդկության մեծագույն հանճար Լենինը և նրա զինակից Ստալինը, 1917 թվականի հուլիսյան օրերից հետո, պարտիային և բանվոր դասակարգին պատրաստում էին կապիտալիզմի վրա վճռական գրոհի տանելու համար։

Թողնելով Յալկալան, անցնելով Հելսինգֆորսով, Վիբորգով, Վլադիմիր Իլյիչը հոկտեմբերի 20-ին ծպտված վերադարձավ Պետրոգրադ...

Միայն վերջին երկու տարում տասնյակ հազարավոր մարդիկ են եղել Իլյիչևոյի տուն-թանգարանում։ Հատկապես բազմամարդ է այստեղ հունվարի ձյունոտ օրերին։

# ՁՄԵՌ

## Հ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Փաթիլներն են պարում օդում
Ինչպես ճերմակ թիթեռներ.
Լեռան ձյունոտ ստորոտում
Մի խումբ կայտառ մանուկներ
Սահնակ նստած սահում են վար,
Կամ ձնագունդ խաղ անում,
Զմուշկներով արծաթափայլ
Մրրիկի պես սլանում։
Հետո սարքում մեծ ձնե մարդ
Սոսն ու Արան միասին,
Իսկ մի պալատ «մարմարազարդ»՝
«Ճարտարապետ» մեր Մոսին։

Կառուցում են ձնե բերդեր՝
Շուրջը պարիսպ լեռնաշար,
Սառցե ողորկ ճանապարհներ...
Փոքրիկ, ճերմակ մի աշխարհ։
Ծերուկ ձմեռն էլ այդքան լավ,
Կառուցել չի իմանում.
Եվ ամպերի բրդից խռնավ
Ձյուն է անվերջ նա մանում։
Փաթիլներն են պարում օդում
Ինչպես աշխույժ թիթեռներ...
Լեռան ձյունոտ ստորոտում
Խաղ է անում խումբը մեր։

# ԵՎԱ ՄՈՐԱՔՐՈՋ ԳԱՂՏՆԻՔԸ

ՄԱՐԻՋԱՆ
(Վրացական գրող)

Նկ. Հ. ԺԱՄԱԳՈՐԾՅԱՆԻ

Եվա մորաքրոջը մեր բակի երեխաները շատ են սիրում։ Նրա միակ որդին՝ տասնութ տարեկան Գուրամը զոհվեց Հայրենական պատերազմում։ Ամբողջ բակի բնակիչները մինչև օրս էլ չեն մոռանում սևաչյա Գուրամին։ Եվա մորաքույրը որդու լուսանկարը կախել է նրա մահճակալի գլխին։

Գուրամի գրասեղանը դրված է առաջվա նման իր տեղում։ Բակի մանուկներին հյուր ընդունելիս, Եվա մորաքույրը միշտ պատմում է Գուրամի մանկության մասին։

— Ես էլ պիտի լավ սովորեմ, ինչպես Գուրամն էր սովորում,— ասում էր փոքրիկ Թենգիզը։

— Իսկ ես կնկարեմ այնպես, ինչպես Գուրամն էր նկարում,— խոստանում էր փոքրիկ Քեթևանը։

— Ես պիտի այնպիսի մարտիկ դառնամ, ինչպիսին Գուրամն էր,— ասում էր Գիան, որը «զինվոր» խաղալը գերադասում էր ուրիշ խաղերից։

Փոքրիկ Նինան այդքան բան չէր հասկանում և Եվա մորաքրոջ փեշից բռնած, լսում էր նրանց զրույցը։ Եվա մորաքույրը բոլորին լսում, պատասխանում, փայփայում էր։ Հաճախ նա երեխաներին հյուրասիրում էր քաղցրավենիքով և թխվածքներով։ Եվ երեխաները չէին հեռանում Եվա մորաքրոջ պատշգամբից։

Հարևանները կատակով ասում էին.

— Աղջի՛, քո տանը մեղր հո չկա, որ այսքան հմայել ես երեխաներին։

— Իմ աղջիկը տանը չի կարողանում մընալ, միշտ աչքը քո պատշգամբին է։ Հենց որ վերադառնում եմ աշխատանքից, իսկույն ծլկում, գալիս է քեզ մոտ։

— Ի՞նչ անեմ, ձեր երեխաներով ես էլ եմ ուրախանում,— ասում էր Եվան և ծանր հառաչում։

Դեկտեմբերի վերջին օրերն էին։ Քամին վզզում էր դրսում։ Երեխաները շատ քիչ էին դուրս գալիս բակը խաղալու։ Այժմ պատշգամբում էին վազվզում։

Երեխաները նկատեցին, որ Եվա մորաքույրը վերջերս իրենցից խուսափում է։ Աշխատանքից վերադառնալով, նա շտապ քայլերով անցնում էր պատշգամբով, մտնում էր սենյակը, դուռը փակում, վարագույրներն իջեցնում ու մնում այնտեղ։ Քանի անգամ երեխաները բախեցին նրա դուռը, բայց նա ժպտալով ասաց.



— Այսօր ժամանակ չունեմ...

— Այսօր ժամանակ չունեմ ձեզնով զբաղվելու։ Տարվա վերջն է, գործ շատ ունեմ...

Մի անգամ Քեթևանն ուզեց մտնել Եվա մորաքրոջ սենյակը, մոտեցավ դռանը, սակայն մորաքույրը դռան ճեղքից գլուխը հանեց և ժպտալով ասաց.

— Քեթևա՛ն ջան, այսօր մի քիչ աշխատանք ունեմ. վաղը համեցեք։

Քեթևանն այնքան նեղացավ, որ «վաղն»

էլ չգնաց մորաքրոջ մոտ։ Նա միջանցքում հանդիպեց Թենգիզին և նրա ականջին քըչ-փըչաց.

— Երևի Եվա մորաքույրը հիվանդ է. «այսօր ժամանակ չունեմ... գործ ունեմ» ասում է։

Թենգիզն էլ Գիային զգուշացրեց.

— Եվա մորաքրոջը ինչ-որ բան է պատահել, էլ դուրս չի գալիս տնից։

Գիան էլ գանգատվեց իր մորը.

— Եվա մորաքույրը այլևս մեզ չի սիրում, ասում է՝ «էլ չգաք»։

— Հապա ի՞նչ եք կարծում, խեղճ կնոջ գլուխը տարաք։ Գուցե՞ հանգստանալ է ուզում... Երևի ուզում է ականջները հանգըստացնել ձեր ձայներից...

Մի անգամ երեխաները տեսան, որ Եվա մորաքույրը տուն վերադարձավ թղթերի մեջ փաթաթած գնումներով, տուփերով ծանրաբեռնված։ Նրա դեմքը փայլում էր։ Գնումները դնելով դռան մոտ, նա մի տուփ տվեց փոքրիկ Նինային և մինչև դուռը բաց կաներ՝ ասաց.

— Զգո՛ւյշ, ձեռքիցդ վայր չգցես, կկոտրվի։

Նինան շատ հավանեց այդ տուփը և հետաքրքրվելով հարցրեց.

— Սա ի՞նչ է։

— Դա իմ գաղտնիքն է,— ծիծաղելով պատասխանեց Եվա մորաքույրը, ներս մտավ, գնումները դարսեց սեղանի վրա և նորից տանից գնաց։

Նինայի մտքից չէր հեռանում «գաղտնիք» բառը։ Երեխան մտածում էր՝ որն էր այդ «գաղտնիքը», թղթում փաթաթածը, պարկի միջինը, թե՞ մեծ տուփի միջինը։

Տուն վերադառնալուն պես, Նինան հարցըրեց մորը.

— Մայրի՛կ, ի՞նչ բան է «գաղտնիքը»։

— Այն, ինչ սուս ու փուս, ծածկված են կատարում։

Նինան իր ձևով հասկացավ մոր ասածը։ Ուրեմն, Եվա մորաքույրը թաքուն ինչ-որ «գաղտնիք» բերեց և պահեց։ Իսկ թե ի՞նչ էր այդ «գաղտնիքը», նա չիմացավ։

Նոր տարվա գիշերը մոտենում էր։ Հարևան կանանցից մեկը, Եվա մորաքրոջ համաձայնությամբ, բակի բոլոր երեխաներին հրավիրեց նրա տուն։



— ...Ահա իմ գաղտնիքը։

Ամենից շուտ փոքրիկ Նինան ու Մարինան ձեռք-ձեռքի տված մտան մորաքրոջ սենյակը։

— Ա՛յ, ի՞նչ է նշանակում կարգ ու կանոն սիրող երեխանե՛ր,— ասաց մորաքույրը, գրկեց նրանց ու համբուրեց։

Երբ բոլորը հավաքվեցին, Եվա մորաքույրը բաց արեց հարևան սենյակի դուռը և ցնծագին ձայնով գոչեց.

— Փոքրիկնե՛ր, ահա իմ «գաղտնիքը»։

— Այդ հո տոնածառ է,— բացագանչեց Նինան և շփոթված կանգ առավ շեմքին։

— Տոնածառ է, ես ուզեցի ձեզ հանկարծակի ուրախացնել և ձեզնից ծածուկ զարդարեցի տոնածառը,— ասաց Եվա մորաքույրը և արտասվալից աչքերով ժպտաց։

Գեղեցիկ զարդարված, պայծառ գույնզգույն աստղերով ու փայլուն շղթաներով ծանրաբեռնված տոնածառը ասես ծիծաղում էր, մեծ բավականություն պատճառելով երեխաներին։ Իսկ Նինան կրկնում էր.

— Այս հո տոնածառ է, տոնածա՜ռ...

Վրաց. թարգմ. Վ. ԱՏՐՅԱՆ

# ԵՐԵՔ ՀԱՐՅՈՒՐ ՏԱՐԻ

Ս. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Նկ. Վ. ԹԵՎԱՆՅԱՆԻ

Ոլորապտույտ ձգվում է փոշոտ ճանապարհը տարեկանի և վարսակի արտերի միջով: Աշնանային ամպամած երեկո է: Կամաց-կամաց ամեն ինչ թաղվում է խավարի մեջ: Բայց ճանապարհը մթության մեջ չէ. նրա ամբողջ երկայնքով ձգվում են խարույկները: Լռության մեջ միայն այդ խարույկներն են ճարճատում և մեկ էլ լսվում են մարդկային աղիողորմ ճիչեր, լաց ու կոծ, սրտաճմլիկ աղաղակներ...

Ճանապարհից հեռու, խոզանների մեջ կանգնած են ցնցոտիապատ, երկար հագուստներով կանայք ու երեխաներ, կորամեջք ծերունիներ ու պառավներ: Վշտից քարացած հայացքով նրանք նայում են հեռվում ծխացող խարույկների կողմը: Նրանց մեջ կան նաև նիհար, բայց թիկնեղ պատանիներ, որոնց աչքերից ատելության կայծեր են թռչում. նրանց բռունցքները սեղմված են:

— Դուք, անիծյա՜լ պաներ, դեռ պատասխան կտաք,— սեղմված ատամների միջից ասում են նրանք և նայում դեպի արդեն մարվող խարույկները:

Իսկ այդ խարույկները սովորական չեն: Նրանցից յուրաքանչյուրի մեջտեղում սոճու մի հսկայական սյուն կա: Ամեն մի սյունին կապված է մի մարդ: Մարդիկ այրվում են սյուների հետ միասին: Նրանցից շատերը դեռ կենդանի են, բայց ոչ ոք չի կարող օգնության հասնել, փրկել նրանց անողոք կրակից: Այրվող մարդկանց կանչերին ու անքոցներին անտարբեր, ճանապարհով անց ու դարձ են անում լեհական զինված ու կատաղի ռազմիկները:

⁂

Մինչև 17-րդ դարի կեսերը Ուկրաինայում այսպիսի դեպքեր շատ էին լինում: Այն ժամանակ Ուկրաինան ընկած էր լեհական լծի տակ: Լեհական պաները թալանում էին գյուղերն ու քաղաքները, տանում էին բնակչության վերջին ունեցվածքը: Փոքրիկ դիմադրության դեպքում նրանք ամբողջ գյուղեր ու ավաններ էին կրակի մատնում, տղամարդկանց այրում էին խարույկների վրա:

Լեհ կալվածատերերին բնակչության հետ իրենց ուզած ձևով վարվելու իրավունք էր տրված: Պանը կարող էր գյուղացուց խլել նրա ցանքսի ամբողջ բերքը, ամեն տեսակ պատիժ տալ նրան. կարող էր խոշտանգել, մինչև անգամ սպանել նրան: Գյուղացին այդ բոլորի համար նույնիսկ բողոքել չէր կարող: Եվ ո՞ւմ բողոքեր, երբ ո՛չ դատ կար, ո՛չ դատաստան, ո՛չ արդարություն, և ոչ էլ իրավունք:

Լեհական պաները ուզում էին ոչնչացնել ուկրաինական կուլտուրան, նրանք աշխատում էին բռնի կերպով տարածել իրենց կրոնը: Նրանք ուզում էին ուկրաինական հողերը միացնել իրենց պետությանը, ստրկացնել ուկրաինական ժողովրդին: Բայց ժողովուրդը չէր ցանկանում ենթարկվել: Գյուղացիներն ու կազակները հետզհետե քաշվում էին դեպի հարավ և Դնեպրի սահանքներից ցած, կղզիների վրա կառուցեցին իրենց ամրությունը, որը կոչվեց Զապորոժյան Սեչ:

Գյուղացիական ապստամբություններ էին բռնկվում անընդհատ: Այդ ապստամբությունները առանձնապես ուժգին բորբոքվեցին 1637—1638 թվականներին: Միայն երկու տարվա արյունահեղ պայքարից հետո լեհերին հաջողվեց վերականգնել իրենց իշխանությունը: Ժողովրդի դրությունն ավելի վատացավ: Լեհական կառավարությունը վերացրեց բոլոր տեսակի արտոնությունները, որ տրված էր կազակների մի փոքրիկ խմբի: Գեթմանի փոխարեն Ուկրաինան սկսեց կառավարել լեհական կոմիսարը: Բոլորն զգացին, որ իրենց փրկությունը ռուսական պետությանը միանալն է:

1648 թվականի գարնանը Ուկրաինան նորից դուրս եկավ պաների ճնշման դեմ: Այդ շարժումն սկսեցին զապորոժյան կազակները, որոնց գլուխն էր կանգնած Բոգդան Խմելնիցկին:

Բոգդան Խմելնիցկին կրթված ու գիտուն

մարդ էր։ Նա ավարտել էր Կիևի ակադեմիան, հետո սովորել էր Յարոսլավլում. մասնակցել էր ծովային բազմաթիվ արշավանքների և շատ լեզուներ գիտեր։ Տեսնելով հարազատ ժողովրդի ծանր վիճակը, նա սկսեց իր շուրջը հավաքել մոտիկ կազակներին և ապստամբության կոչ արեց։

— Մի՞թե մենք դժբախտության մեջ պիտի թողնենք մեր եղբայրներին,— ասում էր նա.— Ես ամեն տեղ սարսափելի ճնշում եմ տեսել։ Դժբախտ ժողովուրդը օգնություն է խնդրում։

— Ժամանակն է, որ մենք սուր վերցնենք և թոթափենք լեհական լուծը,— պատասխանում էին կազակները։

Լեհական կառավարությունը լրտեսների միջոցով իմացավ Խմելնիցկու մտադրությունը և բանտարկեց նրան։ Բայց Բոգդանը բանտից փախավ և ամրացավ Զապորոժյեում։

⁂

Այն հո՞ղմն է սուրում դաշտերով ու տափաստաններով, թե փոթորիկ է բարձրացել։ Այն ի՞նչ հրդեհներ են բռնկվել գիշերվա մթնում, այն ովքեր են քառատրոփ սլանում փոշեպատ ճանապարհներով։ Այդ լեհական պաներն են գլխապատառ փախչում իրենց երկիրը։ Այն ոչ թե փոթորիկ է կամ հողմ, այլ ուկրաինական ազատասեր գյուղացիներն են սլանում անծայր տափաստանով, այդ նրանց վրեժն է այրվում գիշերվա մթնում, այդ լեհական պաների դաստակերտներն են կուլ գնում կրակին։ Այդ լեհական թագավորի ջախջախված զորքերի մնացորդներն են քարշ գալիս դեպի Լեհաստան։ Նրանք, որ եկել էին ճնշելու ուկրաինացիների ազատասեր ոգին, ժողովրդի ցասումը՝ նա են գնում ջարդված։

Քանի՜-քանի՜ անգամ են նրանք հանդիպել ժողովրդի այդ արդար ցասմանը, քանի-քանի անգամ են նրանք իրենց ջոկատները թողել ուկրաինական հողում, բայց դարձյալ եկել են։ Նրանց ձգել է ուկրաինական հարուստ հողը։

Եվ ահա, նորից բարձրացավ ուկրաինական ժողովուրդը։ Այն ժամանակ, երբ Բոգդան Խմելնիցկին կազմակերպում էր զապորոժյան կազակներին, գյուղացիական նոր հուզումներ ու ապստամբություններ բռնկեցին ամբողջ երկրում։ Պաները նորից սկսեցին փախչել Լեհաստան։ Սկսվեց ուկրաինական ժողովրդի ազատագրական պատերազմը լեհերի դեմ։

1648 թվականի գարնանը Բոգդան Խմելնիցկին դուրս եկավ Զապորոժյեից։ Նրան ընդառաջ էին գալիս լեհական զորքերը։ Ժոլտիե Վոդի գետի մոտ և Կորսունի տակ



Նրանց բռունցքները սեղմվեցին։

կազակները ջախջախեցին լեհերին և նրանց զորավար գեթման Պոտոցկուն գերի վերցրին։ Այս հաղթանակից հետո գյուղացիական ապստամբությունն ավելի բորբոքվեց։ Ապստամբած գյուղացիներն ունեին իրենց առաջնորդները։ Դրանցից մեկը Մաքսիմ Կրիվոնոսն էր, որ ահ ու սարսափ էր տարածել լեհերի մեջ։

Պաներն աշխատում էին ապստամբությունը դաժանորեն ճնշել, բայց այդ նրանց չէր հաջողվում։ Նրանք կեղեքում ու հարստա-

հարում էին նաև լեհ ժողովրդին։ Լեհական գյուղացիները նույնպես օր չէին տեսնում իրենց կալվածատերերի ձեռքին։ Այդ էր պատճառը, որ երբ Ուկրաինան ազատագրական պատերազմ սկսեց լեհական շլյախտայի դեմ՝ լեհ գյուղացիները ջերմորեն ողջունեցին ուկրաինական ժողովրդի պայքարը։

Նույն թվականի սեպտեմբերին Բոգդան Խմելնիցկին միացավ Մաքսիմ Կրիվոնոսի հետ և գլխովին ջախջախեց լեհական թագավորի զորքերը։ Այդ ժամանակ նա կարող էր թշնամուն հետապնդել, հասնել մինչև Վարշավա, բայց վերադարձավ Կիև։ Այնտեղ մեծ ցնծություն էր։ Ժողովուրդը դուրս էր եկել դիմավորելու իր ազատարարին։

Բոգդան Խմելնիցկին ձեռնամուխ եղավ իր իշխանությունն ամրապնդելու գործին։ Բայց նա գիտեր, որ լեհերն այդքան հեշտ ձեռք չեն քաշի իր երկրից։ Նա հովանավոր էր փնտրում ու գիտեր, որ միակ անշահախնդիր հովանավորը, դա Ռուսաստանն է։ Նա սկսեց կապ հաստատել Մոսկվայի հետ, Ուկրաինան Ռուսաստանին միացնելու հարց դրեց։

1649 թվականին լեհական զորքերը նորից դուրս եկան Բոգդանի դեմ և նորից պարտություն կրեցին։ Օգոստոսին Խմելնիցկին լեհերի հետ հաշտություն կնքեց։ Այդ հաշտությունից ժողովուրդը դժգոհ էր, որովհետև նրանից օգտվում էին միայն կազակների մի մասը, իսկ գյուղացիների վիճակը չէր թեթևանում։ Պաները նորից Ուկրաինա վերադարձան։ Նրանք սկսեցին կոտորել ապստամբության մասնակիցներին, նրանց առաջնորդներին։

1651 թվականին լեհերն ուխտադրուժ կերպով հարձակվեցին Ուկրաինայի վրա։ Խմելնիցկուն օգնության եկավ Ղրիմի խանը, բայց նա կռվի թեժ պահին դավաճանեց և մարտադաշտից հեռացավ։ Խմելնիցկին գնաց նրան համոզելու, որ նա վերադառնա, բայց խանը Բոգդանին բռնեց և բաց չթողեց։ Կազակները մնացին առանց առաջնորդի։ Անհավասար մարտում նրանք հերոսաբար էին կռվում։ Կազակների երեք հարյուր հոգուց բաղկացած մի խումբ ամրացավ կղզիներից մեկում։ Լեհերը նրանց առաջարկեցին հանձնվել, բայց կազակները պատասխանեցին.

— Մեզ համար թանկ չէ կյանքը, իսկ թշնամու ողորմությունից մենք զզվում ենք։

Այս ասելով նրանք գրկախառնվեցին, ապա հարձակվեցին թշնամու վրա։ Բոլոր կազակներն էլ կոտորվեցին, բայց լեհերի կորուստը երեք անգամ ավելի էր։ Երբ Խմելնիցկուն հաջողվեց դավաճան խանի մոտից փախչել, արդեն ուշ էր։ Նա ստիպված լեհերի հետ հաշտություն կնքեց շատ ծանր պայմաններով։

Գյուղացիների և կազակների դրությունն ավելի վատացավ։ Պաներն ու կալվածատերերը վերադարձան Ուկրաինա և նորից սկըսվեց ճնշումն ու իրավազրկությունը։ Այս պատերազմում Բոգդան Խմելնիցկին և շատ կազակներ հասկացան, որ Ուկրաինան մի-



Նա ապստամբության կոչ արեց։

այն իր ուժերով չի կարող ազատագրվել լեհական լծից։ Դրա համար էլ նա միաժամա-

նակ բանակցություններ էր վարում Մոսկովյան պետության հետ։

Ռուսական պետությունը, մանավանդ Ռուսաստանի ժողովրդական մասսաները ամեն կերպ օգնում էին ուկրաինական ժողովրդին նրա մղած ազատագրական պատերազմում, խրախուսում և օժանդակում էին ապստամբներին։

1653 թվականի աշնանը Զեմսկի Սոբորը Մոսկվայում որոշում ընդունեց Ուկրաինան Ռուսաստանին միացնելու և լեհերին պատերազմ հայտարարելու մասին։ Այդ ժամանակ Ուկրաինայում նորից պատերազմ էր սկսվել լեհերի դեմ։ Խմելնիցկին նորից հաղթանակ տարավ։

1654 թվականի հունվարի սկզբին Բոգդան Խմելնիցկին ուղևորվեց Պերեյասլավլ, որտեղ պետք է Ռադան՝ կազակների համրային ժողովը հաստատեր Ուկրաինան Ռուսաստանին միացնելու պայմանագիրը։

Պերեյասլավլի Ռադան բացվեց 1654 թվականի հունվարի 8-ին։ Խմելնիցկին Ռադայում ասաց, որ Ուկրաինան այլևս ուժ չունի պատերազմը շարունակելու։

— Դրա համար էլ,— ասաց նա,— մենք հավաքվել ենք այստեղ, ամբողջ ժողովրդի առաջ, որ դուք չորս թագավորներից մեկին ու մեկին ձեզ հովանավոր ընտրեք։ Դրանցից մեկը թյուրքական սուլթանն է. նա ճնշում է հույներին։ Մյուսը՝ Ղրիմի խանը՝ ուկրաինական ժողովրդին անտանելի վիրավորանքներ է հասցրել։ Լեհական պաների ճնշման մասին չարժե խոսել։ Մնում է Մոսկովյան թագավորը։

Այստեղ կազակների ավագանին միաբերան բացագանչեց.

— Ուզում ենք Մոսկովյան թագավորի՜ն։

— Ուզում ենք Մոսկովյան թագավորի՜ն,— արձագանքեց հրապարակում կանգնած ժողովուրդը և այդ արձագանքը տարածվեց հեռո՜ւ-հեռո՜ւ... այդ ձայնը լսեց ուկրաինական ամբողջ ժողովուրդը։ Երբ բոլորը լռեցին, Խմելնիցկին նորից աղաղակեց.

— Ուրեմն հավիտյան միասնական լինենք ռուս ժողովրդի հետ։

— Լինենք,— նորից լսվեց արձագանքը։

***

Դարեր շարունակ ուկրաինական ժողովուրդը ձգտում էր միանալ ռուսական պետությանը, արյունակից ռուս ժողովրդին, որի հետ նա կապված էր հինավուրց կապերով, իր ծագումով, իր ազգային բնավորությամբ։



Պաները նորից սկսեցին փախչել։

Օտարերկրյա լուծը միշտ էլ ծանր է եղել։ Եկել էին թաթարական ու թյուրքական խաները և իրենց հորդաներով ավերել խաղաղ գյուղացու օջախը, ոտնակոխ արել նրա ցանքերը, սրի քաշել նրա ընտանիքը։ Լեհական պաները նույնպես աղքատացում ու ավեր են բերել։ Նրանք ձգտել են ոչնչացնել ուկրաինական կուլտուրան։

Բնաջնջումից խուսափելու համար ուկրաինական ժողովուրդը պայքարել է։ 1648—1654 թվականների ազատագրական պատերազմը նշանավոր պետական գործիչ և զորավար Բոգդան Խմելնիցկու գլխավորությամբ, պսակվեց հաղթանակով։ Այդ հաղթանակը ձեռք բերվեց ռուս ժողովրդի օգնությամբ և աջակցությամբ։ Պերեյասլավլի

ռադայի որոշումը ժողովրդի ձգտումների արդյունքն էր։ Իրականացավ ուկրաինական ժողովրդի դարավոր իղձը։

Ճիշտ է, այն ժամանակ Ռուսաստանի գլուխ կանգնած էին ցարը և կալվածատերերը, բայց սլավոնական երկու մեծ ժողովուրդների վերամիավորումը շատ մեծ նշանակություն ունեցավ նրանց կյանքում։ Ռուս և ուկրաինացի ժողովուրդներն այնուհետև միացյալ էին պայքարում թե՛ արտաքին թշնամու, թե՛ ներքին հարստահարողների ու ճնշողների դեմ։ Այդ համատեղ պայքարի շնորհիվ է՛լ ավելի ամրապնդվեց երկու եղբայր ժողովուրդների բարեկամությունը։

Ինչպես ռուս և ուկրաինացի ժողովուրդների, այնպես էլ մյուս ժողովուրդների կյանքում վճռական դեր խաղաց Կոմունիստական պարտիան։ Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ Ռուսաստանի ժողովուրդները իրագործեցին Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան, ազատագրվեցին կապիտալիստական ստրկացումից։ Ուկրաինական ժողովուրդը ռուսներից հետո առաջինն էր, որ գնաց սոցիալիզմի ուղիով, ստեղծեց իր իսկական ազգային պետությունը և դրանով իր պատմության մեջ նոր դարաշրջան բացեց։

Ռուս և ուկրաինացի ժողովուրդների եղբայրությունն ու բարեկամությունն ավելի ամրապնդվեցին Հոկտեմբերյան ռևոլյուցիայի ժամանակ, քաղաքացիական պատերազմում, Հայրենական պատերազմի տարիներին։ Ուկրաինական ժողովուրդը սովետական իշխանության տարիներին չտեսնված հաջողությունների հասավ. ծաղկեց ու բարգավաճեց ուկրաինական կուլտուրան։

Սովետական ժողովուրդների առաջին շարքում, ձեռք ձեռքի տված ռուս ժողովրդի հետ, ուկրաինական ժողովուրդը պայքարում է մարդկության երջանիկ ապագայի համար՝ Կոմունիզմի համար։

Ռուսաստանի հետ Ուկրաինայի վերամիավորման օրից երեք հարյուր տարի է անցել։ Սովետական ժողովուրդը մեծ ցնծությամբ է նշում այդ նշանավոր տարեդարձը։ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 36-րդ տարեդարձին նվիրված հանդիսավոր նիստում արտասանած իր ճառում ՍՍՌՄ Գերագույն Սովետի նախագահ Կ. Ե. Վորոշիլովն ասաց.

«Դա ոչ միայն ռուսների և ուկրաինացիների մեծ տոնն է։ Դա Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության բոլոր ժողովուրդների մեծ տոնն է»։

---

# ԿՏԱԿ

ՏԱՐԱՍ ՇԵՎՉԵՆԿՈ

Երբ կմեռնեմ, դուք թաղեցեք
Ինձ կուրգանի տակ այն,
Ուր որ հագնում է կապույտ մեգ
Ստեպն ուկրաինական,

Որ ես տեսնեմ, լսեմ հավետ
Դնեպրի մռունչը գոռ՝
Ե՛վ արտերում երանավետ,
Ե՛վ ափերում ոլոր:

Իսկ երբ քշի Ուկրաինայից
Նա դեպի ծովն անծայր
Թշնամական արյունը պիղծ,
Այնժամ ես արտ ու դար

Ամեն թողած՝ կհամբառնամ
Մինչև երկինքը բաց,
Որ աղոթեմ, իսկ մինչև այն՝
Չեմ ճանաչում աստված:

Թաղեցե՛ք ինձ, հետո ելե՛ք
Ու փշրեցե՛ք շղթան,
Չար թշնամու արյա՛մբ ցողեք
Ծաղիկն ազատության:

Եվ ինձ այն մեծ ընտանիքում,
Այն նոր, ազատ, անամպ,
Մի՛ մոռանաք, հիշե՛ք անհուն,
Անչար խաղաղությամբ:

# ԵՐՋԱՆԻԿ ՈՒԿՐԱԻՆԱՅՈՒՄ՝



Իզմայիլի մարզ. Լիմանի շրջանում, Սև ծովի ափին, տեղավորված «Զատոկա» մանկական սանատորիայի բուժական կորպուսը:



Նոր Կախովկա: Մանկապարտեզի երեխաները խաղի հրապարակում:



Ստալինոյի Պիոներների պալատում: Լեռնային խմբակի ղեկավար Վ. Ս. Մակաշևը պիոներներին ցույց է տալիս կարապիկի գործող մոդելը:




Լվով: Չորրորդ միջնակարգ դպրոցի Լ. Շևցովայի անվան ջոկատի պիոներները հիմնել են «Բարեկամության անկյուն»: Նրանք նայում են «Չինաստան» ամսագիրը:

*Ֆոտոխրոնիկա՝* ՏԱՍՍ

# ՓՈՂՈՑՈՒՄ

*ՄՆ. ԹԱՐՅԱՆ*

Ինչպես անհոգ թիթեռնիկներ
Թռչկոտում են մեր բակում
Մի խումբ առույգ, ժիր մանուկներ,
Ուրախ գնդակ են խաղում:
Գնդակն հանկարծ փողոց ընկավ,
Ցանկապատից շատ հեռու,
Հետևից էլ Հայկը հասավ,
Առանց շուրջը նայելու:



Նա գնդակին ձեռքը մեկնեց...
Բայց այդ պահին մեքենան
Աղմկելով արգելակվեց,
Եվ այնքան էլ մոտ նրան:
Սարսափահար Հայկը ճչաց
Ու գնդակի մոտ ընկավ,
Իսկ շոֆերը՝ գույնը գցած,
Մեքենայից դուրս եկավ:
Մարդիկ եկան հավաքվեցին,
Անցորդները կանգ առան,
Իսկ տներից դուրս վազեցին
Մոտիկները հարևան:
Զայրացավ մի ուսուցչուհի,

*Նկ. Մ. ՍՈՍՈՅԱՆԻ*

— Անզգույշ, են, անզգո՛ւյշ:
— Ա՜խ, այդ խաղը փողոցների,—
Ասաց մի ծեր վիրաբույժ:
Ով գալիս էր հարց էր տալիս.
— Ի՞նչ է եղել, ո՞վ ընկավ:
— Մի երեխա՞, ո՞ղջ է տեսնես:
Մյուսը, թե՝— Բան չեղավ...
Մայրը եկավ որդուն գրկեց
Սեղմեց կրծքին վախեցած.
— Շոֆեր եղբա՛յր, շնորհակալ եմ,—
Երախտապարտ նա ասաց:
— Ոչի՜նչ... իսկ դու՝ չար տղա ես,
Եվ անհոգ ես խաղալիս,
Պետք է դու միշտ զգույշ լինես
Բակից՝ փողոց դուրս գալիս...



Թանկ ես, գիտեմ, մորդ համար,
Մեզ համար էլ թանկ ես դու.
Մատաղ կյանքիդ միշտ հոգատար,
Մենք բոլորս ենք հետևում...

# ՀԱՎԱՏԱՐՄՈՒԹՅԱՆ ԵՐԴՈՒՄ

1924 թիվ, հունվար: Վախճանվեց Կոմունիստական պարտիայի և Սովետական պետության ստեղծող Վլադիմիր Իլյիչ Լենինը: Ամբողջ աշխատավոր մարդկությունը համակվեց խորը վշտով: Այդ օրերին, մեծահասակների հետ միասին, Իլյիչի դագաղի մոտ պատվո պահակ էին կանգնել պատանի պիոներների ներկայացուցիչները:

Երկիրը հրաժեշտ էր տալիս անմոռանալի առաջնորդին, անմահ՝ Լենինին: Սրտի խորին կսկիծով հրաժեշտ էին տալիս նաև երեխաները: Նրանք երդվում էին միշտ վառ ու պայծառ պահել նրա անմահ հիշատակն իրենց մատաղ սրտերում:

Այդ ժամանակ հրավիրված կոմերիտմիության Կենտրոնական Կոմիտեի պլենումը, հարազատ Կոմունիստական պարտիային խոստում տվեց, պիոներական կազմակերպությունում անեցնել պատանի լենինյանների արժանավոր սերունդ, Լենինի պատգամներին հավատարիմ սերունդ: Պլենումը որոշեց պիոներական կազմակերպությանը շնորհել՝ Վլադիմիր Իլյիչ Լենինի անունը:

Այդ առթիվ, պիոներներին և բոլոր երեխաներին ուղղված դիմումի մեջ պլենումը գրել է. «Դուք պետք է արժանի լինեք այն մեծ անվանը, որ գրված է ձեր դրոշի վրա»:

Մեր Հայրենիքի պիոներները շնորհակալության մեծ զգացմունքով ընդունեցին պիոներական կազմակերպությունը Լենինի անունով կոչելու լուրը: Որպես պատասխան այդ դիմումի, հազարավոր երեխաներ անցան պիոներական կազմակերպության շարքերը:

1924 թվականի մայիսի 23-ին, Մոսկվայի տաս հազար պիոներներ հավաքվեցին Կարմիր հրապարակում ընդունելու մեծ Լենինի անունը և Կոմունիստական պարտիային հավատարմության երդում տալու...

Կարմիր հրապարակում կանգնած պատանի պիոներների ամրակուռ շարքերը զգաստանում են, ուղղվում: Հրապարակում խորին լռություն է տիրում: Բոլորի հայացքներն ուղղված են Կրեմլի դարպասներին:

Եվ ահա հրապարակ են մտնում պարտիայի 13-րդ համագումարի դելեգատները Ի. Վ. Ստալինի գլխավորությամբ: Բազմամիլիոն պիոներական կազմակերպության կողմից հազարավոր պիոներներ հանդիսավոր երդում են տալիս Կոմունիստական պարտիային: Նրանք երդվում են ազնվորեն ծառայել սոցիալիստական Հայրենիքին և անշեղորեն կատարել անմահ Լենինի պատգամները:

Մարտական և խրոխտ շարքերն անցնում են Լենինի դամբարանի առջևով, խոնարհելով իրենց ալ դրոշները: Վ. Ի. Լենինի անմահ գործին հավատարմորեն ծառայելու կոչին, տրվում է խրոխտ պատասխան՝

«Միշտ պատրաստ»:

Վ. Ի. Լենինի անվան պիոներական կազմակերպության շարքերում աճել ու դաստիարակվել են և այժմ էլ դաստիարակվում են միլիոնավոր երեխաներ, որոնք բարձր են պահում Լենինի դրոշը, սրբությամբ կատարում հանճարեղ առաջնորդի պատգամները:

# Պատրաստ







1. Կիրովականի № 1 դպրոցի 6-րդ դասարանի առաջին օղակի պիոներները պատրաստվում են «Պատմվածք Զոյայի և Շուրայի մասին» գրքի քննարկմանը: 2. Կիրովականի 3-րդ դպրոցի պիոներական դրուժինայի դահուկավորները դուրս են եկել «Պիոներսկայա պրավդա» թերթի գավաթի մրցումներին: 3. Քանաքեռի մանկական քաղաքի պատանի մեղվաբույծները մեղվի առատ բերք են ստացել: 4. Լենինականի պիոներների տան «Հմուտ ձեռքեր» խմբակի անդամները աշխատանքի ժամին: 5. Կոտայքի շրջանի Հրազ-









...դան գյուղի պիոներները օգնում են կոլտնտեսությանը: Պիոներներից մեկը իր խնամած նորքի հետ: 6. Ալավերդու շրջանի Ուզունլար գյուղի № 1 դպրոցի ֆիզիկայի կաբինետում պարապմունքի ժամին: 7. Շահումյանի շրջանի Ստալինի անվան դպրոցի առաջին ջոկատի պիոներները լույս են ընծայում իրենց պատի թերթի ներքական համարը: 8. Արտաշատի շրջանի Այգեստան գյուղի միջնակարգ դպրոցի պիոներները դպրոցամերձ հողամասից ծաղկի սերմեր են հավաքում:

Ֆոտո՝ Մ. ՔՈՉԱՐՅԱՆԻ





## ՌԱԴԻՈՀԱՆԳՈՒՅՑԸ

Ֆիզիկայի խմբակում շատ աշակերտներ էին մասնակցում: Մի պարապմունքի ժամանակ խմբակի անդամներն սկսեցին ուսումնասիրել ռադիոհաղորդիչ ապարատը: Լևոն Գենեվիզյանն ասաց.

— Տղանե՛ր, եկեք մեր ուսումնարանում ռադիոհանգույց կառուցենք:

— Շատ լավ միտք է,— հավանություն տվին Լյուդվիգ Խաչատրյանն ու Վանիկ Հովհաննիսյանը:

Հաջորդ օրվանից սկսվեց համառ և հետաքրքիր աշխատանքը: Դասերից հետո հաճախ ուսումնարանի միջանցքներում կարելի էր տեսնել Լևոնին, Լյուդվիգին և Վանիկին: Մեկը անցք էր բացում պատի մեջ լարերի համար, մյուսը լարերն էր ամրացնում, իսկ երրորդը պատրաստում էր ռադիոբարձրախոսների ամրացման տեղերը:

Խմբակի յուրաքանչյուր անդամ իրեն տրված աշխատանքն էր կատարում: Եվ նրանք կարճ ժամանակում իրենց ուժերով պատրաստեցին ռադիոհանգույցը:

Մի օր էլ ուսումնարանի սաները հավաքվեցին բարձրախոսների մոտ և անհամբերությամբ սպասում էին: Հանկարծ հնչեց ֆիզիկայի խմբակի ղեկավար ընկեր Օրդյանի ձայնը:

«Ուշադրությո՛ւն, ուշադրությո՛ւն: Խոսում է Երևանի № 10 Արհեստագործական ուսումնարանի ռադիոհանգույցը: Այսօրվանից սկսում ենք մեր ռադիոհաղորդումները»:

Հավաքվածներն ուրախ բացականչություններով սկսեցին ողջունել միմյանց:

Եվ այսպես ամեն օր առավոտյան, դասերից առաջ ուսումնարանի սաները լսում են հաղորդումներ իրենց կյանքից: Երեկոյան հաղորդվում են զրույցներ ու հոդվածներ՝ «Տեխնիկայի նորություններ», «Մեր օրացույցը» և այլ թեմաներով:

Ռադիոհաղորդումներին մասնակցում են նաև ուսումնարանի գեղարվեստական ինքնագործունեության խմբակների անդամները: Ֆիզիկայի խմբակի այդ նվերը մեծ հետաքրքրություն է առաջ բերել ուսումնարանում:

*Հ. ՄԱՐԿՈՍՅԱՆ*
*(Երևանի № 10 արհեստագործական ուսումնարանի ԼԿԵՄ կոմիտեի քարտուղար)*

## ԽՄԲԱԿՆ ՕԳՆԵՑ

*Ես սովորում եմ յոթերորդ դասարանում: Այս ուսումնական տարվանից մենք անցնում ենք նոր առարկա՝ քիմիա: Հենց առաջին դասից այդ առարկան շատ հետաքրքրեց մեզ և մենք որոշեցինք քիմիան էլ լավ սովորել:*

*— Եկեք քիմիայի խմբակ կազմակերպենք,— առաջարկեցին մեր ջոկատի պիոներներից մի քանիսը:*

*Մեր ցանկության մասին հայտնեցինք դասատուին: Նա ուրախությամբ համաձայնեց օգնել մեզ: Գործին օգնեց նաև ավագ ջոկատավարը: Շուտով խմբակի մասին իմացան շատերը: Պարապմունքներին սկսեցին հաճախել ոչ միայն մեր, այլև մյուս ջոկատների պիոներների մի մասը: Հիմա մենք կատարում ենք շատ հետաքրքիր փորձեր, կարդում ենք փոքրիկ ռեֆերատներ ռուս մեծ քիմիկոսների մասին: Եվ դա մեզ օգնեց, որ քիմիան լավ յուրացնենք: Ջոկատի խորհուրդը որոշել է նամակագրական կապ հաստատել Երևանի Պիոներների պալատի պատանի քիմիկոսների խմբակի հետ: Մենք նրանց կպատմենք մեր խմբակի մասին և կխնդրենք, որ օգնեն մեր աշխատանքն ավելի հետաքրքիր դարձնելու համար: Այժմ մեր ջոկատի ոչ մի պիոներ քիմիայից «2» գնահատական չունի:*

Ռ. ՃՇՄԱՐԻՏՅԱՆ
(Ստեփանավանի շրջանի, Գյառգյարի դպրոցի 7-րդ դասարանի աշակերտ)

# ՍՈՎՈՐԻՐ, ԻՆՉՊԵՍ ՍՈՎՈՐԵԼ Է ԼԵՆԻՆԸ

Ս. ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ

Ֆոտո՝ Հ. ՀԵՔԵՔՅԱՆԻ

Մանկավարժական խորհրդի նիստից հետո, 28-րդ դպրոցի 5-րդ «ա» դասարանի դասղեկ Արփիկ Միսկարյանի և ջոկատավար Շաղիկ Իսրայելյանի միջև լուրջ խոսակցություն տեղի ունեցավ։

— Հինգ հոգի առաջին քառորդում «2» գնահատական ունեն,— ասաց Միսկարյանը,— դա լավ չէ։

— Ի՞նչ խորհուրդ եք տալիս,— դիմելով դասղեկին հուզված հարցրեց ջոկատավարը,— երկու գնահատական ունեցողների հարցը չքննարկե՞նք ջոկատի խորհրդում։

— Ավելի լավ կլինի,— ասաց դասղեկը,— անցկացնենք մի հավաքույթ, որը ետ մնացողներին շատ բան կհասկացնի։

— Իսկ ի՞նչ թեմայով,— աշխուժացավ Շաղիկը։

Դասղեկը ժպտաց։

— Հավաքույթի թեման կլինի՝ «Սովորիր, ինչպես սովորել է Լենինը»։

— Այո՛, այո՛,— ուրախությունը հազիվ զսպելով բացագանչեց Շաղիկը։

Ջոկատի խորհրդի նիստում Արփիկ Միսկարյանը համառոտակի բացատրեց «Սովորիր, ինչպես սովորել է Լենինը» թեմայով անցկացվելիք հավաքույթի իմաստը։ Նա ասաց, որ պիոներների հայրենասիրական պարտքը լավ սովորելն է։ Երբ նրանք մի անգամ էլ ուսումնասիրեն Վ. Ի. Լենինի կյանքի մանկական և դպրոցական տարիները, իմանան, թե ինչպես էր նա սովորում և ինչքան կարգապահ էր, ավելի գիտակցորեն կվերաբերվեն դեպի ուսումը։

Ուսուցչուհու խոսքը ոգևորեց խորհրդի անդամներին։ Ամեն մեկն ուզում էր մի լավ առաջարկ անել։

— Այս հավաքույթը,— ասաց Շաղիկը,— մեզ շատ բան կսովորեցնի։ Մեծ Լենինը դժվարություններից երբեք չի վախեցել, մենք էլ չպետք է վախենանք։ Նա միշտ համարձակ ու կայուն է եղել, առույգ և ընկերասեր։ Մենք պատանի լենինյաններ ենք, ուրեմն նույնպես համարձակ և ընկերասեր պետք է լինենք։

— Հավաքույթը լավ անցկացնելու համար լավ կլինի, որ օղակներում կարդանք Վ. Ի. Լենինի մանկական և դպրոցական տարիներին նվիրված գրքեր ու հոդվածներ,— ասաց ջոկատի խորհրդի նախագահ Մարիետա Գալուկյանը,— Ուլյանովայի «Վ. Ի. Լենինի մանկական և դպրոցական տարիները», Կրուպսկայայի «Հիշողություններ Լենինի մասին»...

— Ռուսերեն «Պիոներ» ամսագրի 1948 թվականի առաջին համարում տպագրված է «Ինչպես էր կարդում Լենինը» հոդվածը, իսկ 1948 և 1949 թվականների «Դրուժնիե ռեբյատա» ամսագրի առաջին համարներում՝ «Առաջին աշակերտը» և «Լենինի թանգարանում» հոդվածները։ Լավ կլինի օգտագործենք այդ նյութերը,— առաջարկեց Նելլին։

Մյուսներն էլ հիշատակեցին Կոնոնովի «Պատմվածքներ Լենինի մասին», «Պատմվածքներ մեծ օրերի մասին» և այլ գրքեր



Ջոկատի պիոներները պատրաստում են Լենինին նվիրված ալբոմ։

ու հայ գրողների գրվածքներ, նվիրված Լենինին։

— Եկեք մինչև հավաքույթը դիտենք «Լենինը հոկտեմբերին» կինոնկարը, «Ընտանիք» ներկայացումը և օղակներով լինենք Պիոներների պալատի Լենինի—Ստալինի սենյակում,— ասաց Ջուլիետան։

Ապա ջոկատի խորհուրդն աշխատանքի բաժանում կատարեց։ Խորհրդի անդամ Նելլի Դանիելյանին հանձնարարվեց զբաղվել պատի թերթի լույս ընծայման հարցով։ Օղակներից մեկին հանձնարարվեց պատրաստել ֆոտո-մոնտաժ, իսկ Ջուլիետա Մուրադյանը պետք է կազմակերպեր հավաքույթի գեղարվեստական մասը։

— Ջոկատի խորհրդի նախագահ Մարիետա Գալուկյանի համառոտ բացման խոսքից հետո ելույթ կունենան պիոներները։ Ամեն մի օղակ հանդես կգա մի թեմայով։

Ջոկատի պիոներներն ուրախությամբ սկսեցին նախապատրաստվել հավաքույթին։

Հանձնարարված աշխատանքները լավ կատարելու համար օղակավարները և առանձին պիոներներ եղան Խնկո Ապոր, Հանրային, Պիոներների պալատի գրադարաններում, պիոներական ակտիվի սենյակում։ Դժվարության դեպքում նրանք դիմում էին դասղեկին և ջոկատավարին։ Ջոկատի խորհուրդը մի անգամ քննարկեց, թե ինչպես է ընթանում հավաքույթի նախապատրաստումը։

Վերջապես եկավ հավաքույթի օրը։

Այն սենյակը, որտեղ տեղի էր ունենալու հավաքույթը, նախօրոք կարգի էր բերված, գեղեցիկ կահավորված։ Երեխաները գրել ու փակցրել էին Վ. Ի. Լենինի և Ի. Վ. Ստալինի հետևյալ ասույթները՝ «Սովորել, սովորել, սովորել», «Հիշեցեք, սիրեցեք, ուսումնասիրեցեք Իլյիչին, մեր ուսուցչին, մեր առաջնորդին», «Եթե ես գիտեմ, որ իմ իմացածը քիչ է, կաշխատեմ շատ գիտենալ»։



Ջոկատը Երևանի Պիոներների պալատի Լենինի—Ստալինի սենյակում ծանոթանում է Լենինի մանկական և դպրոցական տարիներին։

Հավաքույթից առաջ պիոներները խմբերով մոտենում էին գեղեցիկ ձևավորված պատի թերթին, ֆոտո-մոնտաժին, կարդում էին, վիճում, ծիծաղում։

Ջոկատի հավաքույթին հրավիրված էին նաև ծնողներ և ուսուցիչներ։

Մարիետա Գալուկյանը հավաքույթի սկզբում ասաց.

— Վոլոդյա Ուլյանովի կյանքը պետք է օրինակ լինի բոլորիս համար։ Մեզանից ամեն մեկը լավ պետք է կատարի իր առաջին պարտականությունը՝ սովորի այնպես, ինչպես սովորել է Լենինը, սիրի Հայրենիքն այնպես, ինչպես սիրել են Վ. Ի. Լենինը և Ի. Վ. Ստալինը։

Ապա ելույթ ունեցան առանձին պիոներներ։

Լաուրա Պողոսյանը խոսեց այն մասին, թե «Ինչպես էր Վոլոդյա Ուլյանովը կարողանում կազմակերպել իր օրը»։ Նա գրքերից օրինակներ բերեց և ցույց տվեց, թե ինչպես Վոլոդյան խելացիորեն էր օգտագործում ժամանակը, գերազանց պատրաստում դասերը, օգնում քույրերին ու ընկերներին։ Նա ժամանակ էր գտնում նաև կարդալու և խաղալու համար։

Լաուրան պատմեց, թե ինչպես է իրենց ջոկատը կազմակերպում պիոներների հանգիստը։ Մելանիան պատմեց, թե «Ինչպես էր Վոլոդյա Ուլյանովը պատրաստում դասերը»։

— Փոքրիկ Վոլոդյան լուրջ և ուշադիր է եղել դասերի ժամանակ։ Բայց նա դասերը պատրաստելիս միայն դասատուների բացատրություններով և դասագրքերում գրվածով չէր բավարարվում։ Նա կարդում էր լրացուցիչ գրականություն, որը օգնում էր ավելի շատ բան իմանալուն։

Մելանիան խոսեց նաև այն մասին, թե ջոկատի պիոներները ինչպես են լսում դասատուներին, ինչպես են պատրաստում դասերը և հպարտությամբ նշեց, որ Մարիետան, Նելլին, Անիկը և ուրիշները առաջին քառորդը փակել են «5» գնահատականներով։ Նրանք լավ են հասկացել իրենց հայրենասիրական պարտքը։

— Ջոկատի բոլոր պիոներները պետք է

հետևեն նրանց օրինակին,— վերջացրեց Մարիետան։

Ալվարդ Մովսիսյանը պատմեց, թե «Ինչպես էր Վոլոդյա Ուլյանովը օգնում իր ընկերներին»։ Վոլոդյան չէր սիրում դասի ժամանակ հուշել և թույլ չէր տալիս ընկերներին արտագրելու տնային աշխատանքը։ Նա համբերատար կերպով բացատրում էր նրանց անհասկանալի տեղերը։

— Մեր ջոկատում էլ այդպես պետք է լինի։ Իսկ մեր դասարանում դեռ չի վերացված հուշելը, դասի ժամանակ խոսելը։ Այս թերությունները որ վերացնենք, երկուսներն էլ կվերանան։

Ջեմմա Հարությունյանն իր զրույցը նվիրեց «Վոլոդյան ընտանիքում» թեմային։ Նա պատմեց այն մասին, թե ինչպես Վոլոդյան հարգում և սիրում էր ծնողներին, համբերաշխ էր եղբայրների և քույրերի հետ։ Նա օրինակներ բերեց Վոլոդյայի ազնվության, ճշտապահության մասին։

— Մեր ջոկատի պիոներները նույնպես տանը օգնում են ծնողներին, խնամում փոքրերին,— ասաց Ջեմման։

Հավաքույթում պիոներները արտասանեցին բանաստեղծություններ նվիրված Լենինին, երգեցին, պարեցին։

Հավաքույթը մեծ լիցք տվեց ջոկատին։ Պիոներները մինչև հիմա էլ հիշում են ընկերների ելույթները և ձգտում են ավելի լավ սովորել և լավ աշխատել։

# ՉԵՄՊԻՈՆԸ

Խ. ԳՅՈՒԼՆԱԶԱՐՅԱՆ

Նկ. ԱՆ. ԳԱՍՊԱՐՅԱՆԻ

Գյուղում միայն երկու տղա իսկական չմուշկներ ունեին՝ Ազատն ու Սարգիսը։ Տղաների շրջանում առաջնությունը, իհարկե, Ազատի չմուշկներին էին տալիս։ Դրանք նոր ու փայլուն էին, ոչխարի եղջյուրների պես դեպի վեր ոլորված քթերով. մինչդեռ Սարգսի չմուշկները հին էին, տակերը բարակ թիթեղի նման, իսկ քթերը՝ կտրած։ Երբ Սարգիսն իր չմուշկներով փողոց էր դուրս գալիս, անընդհատ սայթաքում էր, կամ խրվում դեռևս ոտքերի տակ լավ չամրացած ձյան մեջ։ Այդ ժամանակ նույնիսկ ամենափոքր տղաները, որ փայտե ինքնաշեն չմուշկ էին քշում, այն էլ մի ոտքով, ծաղրում էին նրան.

— Փախե՛ք, չեմպիոնը սլանում է...

Սարգիսն ամեն կերպ աշխատում էր բացատրել նրանց, որ իր չմուշկները սառույցի համար են և ոչ թե տրորված ձյան, որ մրցումների ժամանակ սպորտսմենները հենց այդպիսի չմուշկներով են սահում. բայց ոչ ոք չէր ուզում հավատալ։

— Քո չմուշկների քթերն ուղղակի ջարդված են,— ասում էին տղաները։

— Բա այսպես ջարդված կլինի՞,— նեղացած ասում էր Սարգիսը՝ ցույց տալով հարթ կտրվածքը։

Իհարկե, Սարգիսն էլ մյուս երեխաների նման կարող էր փայտե չմուշկներ սարքել. դրանից հեշտ բան չկա։ Միայն թե այդպիսի չմուշկով սահելը շատ է դժվար, իսկ ոտքերից ամրացնելու համար այնքան թոկ ես փաթաթում, որ կոշիկներիդ երեսն էլ չի երևում։ Այդպիսիններին տղաները ծաղրանքով «ինքնաթիռ» են ասում, իսկ տիրոջը՝ «օդաչու»։ Ոչ, Սարգիսն այդպիսի չմուշկ չէր ուզում։



Գյուղից քիչ հեռու, գետի եզրին մի փոքրիկ բլուր կար։ Ամռանն այդ բլուրը ծածկըված էր լինում կանաչ ու խիտ խոտով, իսկ ձմռանն ամենահարմար վայրն էր սահելու համար։ Ձմեռային արձակուրդների ժամանակ առավոտից մինչև ուշ երեկո բլրի վրա երեխաներ էին լինում։ Շատերը սահնակներ էին բերում, մի քանիսը՝ չմուշկներ, ուրիշներն էլ դահուկներով էին գալիս։ Բայց ճիշտն ասած, իսկական դահուկներ էլ շատ

քիչ կային։ Դրանք մեծ մասամբ քանդված տակառի տախտակներ էին՝ մի կերպ ոտքերին կապած։

Ազատը շատ էր հպարտանում իր չմուշկներով։ Երբ նա բլուրից ցած էր սլանում, կամ ոտքերը խաչաձև իրար առաջ դնելով զանազան ձևավոր շարժումներ էր անում, փոքրիկները հիացմունքով էին նայում նրան,



Եվ այսպես օրեկան մի քանի անգամ։

իսկ հասակակից տղաներն այնպես էին ցույց տալիս, թե իբր չեն նկատում ո՛չ նրա ինքնագոհ ժպիտը, ոչ էլ ցուցամոլությունը։

Բլուրի վրա առանձին աշխուժություն էր սկսվում, երբ գալիս էր Սարգիսն իր չարաբաստիկ չմուշկներով։ Բոլորը բարձրաձայն ծիծաղում էին, իսկ Ազատը արհամարհանքով դիմում էր նրան.

— Էյ, չեմպիո՛ն, սլանա՞նք։

— Սլանանք,— ցածրաձայն պատասխանում էր Սարգիսը։

Ուրախ հանդիսականներով շրջապատված նրանք բլրի գագաթն էին բարձրանում, կանգնում էին իրար կողքի։ Տղաներից մեկը ձեռքը թափ էր տալիս և նրանք սահում էին ցած։ Բայց հազիվ մի քանի քայլ արած, Սարգսի չմուշկների սուր ծայրերը խրվում էին ձյան մեջ և բոլորի ծաղրական քրքիջի տակ նա թավալվում էր գետնին, իսկ նրա կողքով քամու պես սլանում էր մի քիչ դեպի առաջ թեքված Ազատը։ Եվ այսպես օրեկան մի քանի անգամ։

⁂

Ամբողջ ձմեռը Սարգիսը տանջվում էր սրաքիթ չմուշկների ձեռքին։ Գյուղում նույնիսկ մեծահասակներն արդեն նրան «չեմպիոն» էին կոչում, իսկ սրամիտ տղաները մի փոքրիկ ոտանավոր էին գրել Սարգսի ու նրա չմուշկների մասին։

Սարգիսն ամաչում էր հորը խնդրել, որ քաղաքից նոր չմուշկներ բերի։ Չէ՞ որ ինքն արդեն մի զույգ ուներ. հարևան երեխաներն այդ էլ չունեին և իրենց պատրաստած «ինքնաթիռներն» էին քշում։

⁂

Փետրվարն անցավ։ Չմուշկներով խաղալն էլ անցավ, հալվեց ձյան պես։ Գարունն իր հետ հազար ու մի նոր հետաքրքրություն բերեց։ Դպրոցում սկսեցին գործել ֆուտբոլի, վոլեյբոլի, բասկետբոլի և թեթև ատլետիկայի խմբակները։

Գարնանային սպորտ խաղերի մեջ մոռացվեցին չմուշկներն ու ձմեռային խաղերի հետ կապված սրամտությունները։ Դրանցից միայն ծաղրական ոտանավորը մնաց, և Սարգսի մականունը՝ «չեմպիոն»։ Բոլորն էլ որ մոռանային, Ազատը չէր մոռանա և հարմար առիթ էր փնտրում նրան խայթելու։ Այդ բանը զայրացնում էր Սարգսին և ստիպում ավելի շատ զբաղվել սպորտով։ Դպրոցում ոչ ոք նրա նման չէր վազում։ Տասներորդ դասարանցիների հետ հավասար նա կարողանում էր թռչել, մագլցել և պտտաձողի վրա բարդ շարժումներ անել։ Դասատուն նկատեց Սարգսի ունակությունները և դասերից հետո սկսեց նրա հետ առանձին պարապել։ Երբ ամռանը ճամբար գնացին, Սարգիսը վազքի խմբակի ավագ նշանակվեց։ Ծաղրողներից շատերն սկսեցին հարգանքով վերաբերվել Սարգսին, իսկ ավելի փոքրերն աշխատում էին նմանվել նրան։ Միայն Ազատն էր, որ առաջվա նման արհամարհանքով էր նայում ընկերոջը և կրկնում հնացած ոտանավորը, այժմ արդեն ոչ մեկի ծիծաղը չշարժելով։

⁂

Ձմեռնամուտին դպրոցում չմուշկավարների խմբակ կազմակերպվեց։ Սարգիսն առա-

*ջիններից մեկը ցուցակագրվեց ֆիզկուլտուրայի ուսուցչի մոտ, իսկ Ազատն ասաց.*

*— Ես առանց ձեզ էլ կարող եմ։*

*Խմբակի անդամները նոր չմուշկներ ձեռք բերեցին և համառորեն սկսեցին պատրաստվել ձմեռային սպորտ-խաղերին։*

*Երբ մի առավոտ էլ արթնացան, տեսան, որ փողոցներն ու տանիքները ծածկված են փափուկ ու սպիտակ ձյան հաստ շերտով։ Այդ օրը դասերից հետո ֆիզկուլտուրայի ուսուցչի հետ բոլոր տղաները բլուր գնացին։ Մինչև երեկո ձյունը տրորեցին, երեկոյան դեմ դույլերով ջուր կրեցին և լցրին հարթված ձյան վրա։ Չմուշկներով սահելու համար ամուր ճանապարհն արդեն պատրաստ էր։ Դասերից հետո բոլորն այնտեղ էին։ Գրեթե բոլոր տղաները հրաշալի, նոր չմուշկներ ունեին և այն էլ հատուկ կոշիկների վրա ամրացրած։ Միայն մի քանի փոքրիկներ եկել էին «ինքնաթիռներով» և այն էլ ավելի շատ ձյան մեջ թավալվելու, քան թե սահելու համար։*

*Երբ Սարգիսը եկավ, բլրի վրա արդեն ահագին բազմություն էր հավաքվել։ Այնտեղ էր նաև Ազատը։ Նա կանգնել էր տղաներից հեռու և կեղծ անտարբերությամբ նրանց նոր չմուշկներն էր դիտում, մտքում դրանք համեմատելով ամառվա ընթացքում մի քիչ ժանգոտած իր չմուշկների հետ։*

*Սարգիսը բլրի գագաթը բարձրացավ առանց շտապելու։ Ազատը նկատեց նրան և արագությամբ ցած սահեց ու իբր թե պատահաբար թեթևակի կպավ նրա ուսին։ Անակնկալ հարվածից Սարգիսը կորցրեց հավասարակշռությունն ու վայր ընկնելով մեջքի վրա սահեց գրեթե մինչև բլրի ստորոտը։*

*— Տեսե՛ք, չեմպիոնն էլի գլորվում է,— կծու հեգնանքով ասաց Ազատը։*

*Սարգիսը ոչինչ չասաց. արագ վեր կացավ ու քարայծի նման մագլցեց բլրի գագաթը։ Երբ Ազատն էլ բլրի գագաթին հասավ, հպարտ կեցվածք ընդունեց և ասաց.*

*— Հը՜, չեմպիո՛ն, սլանա՞նք։*

*— Սլանանք,— ցածրաձայն պատասխանեց Սարգիսը։*

*Նրանք իրար կողքի կանգնեցին։ Տղաներից մեկը ձեռքը թափ տվեց։ Ազատը պոկվեց տեղից, իսկ Սարգիսը մի ակնթարթ ուշացավ։ Նա իր աչքերի առաջ տեսավ Ազատի բաճկոնի թրթռացող փեշն ու ամեն ինչ մոռացած նետվեց առաջ։ Սառը քամին այրում էր նրա դեմքը, ձյան մանրիկ փոշուց նրա աչքերն արցունքոտվում էին։ Ազատն անընդհատ զիգզագներ էր անում, որպեսզի խանգարի մրցակցին։ Բայց Սարգսին արդեն ոչ մի խոչընդոտ չէր կարող խանգարել։ Արագ ընթացքի ժամանակ նա հանկարծ դեպի աջ թեքվեց և գնդակի պես կծկվելով առաջ անցավ։ Ազատը, որ նրան խանգարելու համար ուզում էր նրա առաջը կտրել, ինքը կորցրեց հավասարակշռությունը և փռվեց սառցե ճանապարհին։ Սարգիսը բլրի ստորոտը հասավ։ Երբ նորից բլրի գա-*



— Մենք դեռ կհանդիպենք...

*գաթը բարձրացան, Ազատը տաքացած հայտարարեց.*

*— Թող նորից գա... դե՛, նորից արի, եթե չես վախենում...*

*— Գնանք։*

*Ու նորից սլացան։ Սարգիսն այս անգամ էլ առաջ ընկավ։ Նրանց հետևից սլացող բոլոր տղաները հաստատեցին այդ։ Ազատը*

*բարկությունից քիչ էր մնում լաց լիներ։ Նրա թռունցքները սեղմվում էին։ Նա ուզում էր կռվել Սարգսի հետ. բայց նրանց շրջապատած տղաներն այնքան սառն արհամարհանքով էին նայում նրան, որ նա ավելի լավ համարեց հեռանալ։*

*— Մենք դեռ կհանդիպենք,— գնալուց առաջ սպառնալից ասաց նա։*

*— Դե, գնա, պարծենկո՛տ,— պատասխանեց յոթ տարեկան մի տղա։*

*Բոլորը քրքջացին։*

*Այդ ձմեռ շրջկենտրոնում կազմակերպված շմշկավարների մրցումների ժամանակ Սարգիսն առաջնություն շահեց։ Իսկ Ազատը թողեց չմուշկներով սահելը։*

---



# ՍԵՎԱՆ

*Թրֆանիկ Գանթարճիյանը ապրում է Բուլղարիայի Խասկովա քաղաքում։ Նա վերջերս գերազանց գնահատականներով ավարտեց Խասկովայի հայկական տարրական դպրոցը։ Թրֆանիկը պիոներ է։ Նա մեր ամսագրի խմբագրությանն է ուղարկել երկու ոտանավոր՝ «Սևան» և «Հայրենի կարոտ», որոնց մեջ արտահայտում է իր անսահման սերը դեպի Սովետական Հայաստանը։ Տպագրում ենք այդ ոտանավորներից մեկը։*

Բազմած ես դու, սիրուն Սևա՛ն,
Սեգ սարերի մեջ աննման,
Հմայքիդ տակ կախարդական
Հավետ ծաղկում է Հայաստան:

Անգին գոհար դու մեր երկրի,
Կյանք ես տալիս ողջ դաշտերին,
Քեզնից բխած Զանգուն վարար,
Լույս է սփռում աշխարհին արար:

Անթիվ դարեր ապրել ես դու
Միշտ գեղեցիկ, միշտ կենսատու,
Քեզնով եղել ենք մենք հպարտ
Սիրուն Սևա՛ն մեր հարազատ:

# ԽՈՐՀՐԴԱՎՈՐ ԴԱՇՆԱՄՈՒՐԸ

*ԱԶԱՏ ՇԱՀԻՆՅԱՆ*

*Մի անգամ երեկոյան, մայրիկը կարևոր գործով տեղ էր գնացել։ Տանը մնացել էին Հրանտիկն ու իր փոքր քույրը՝ Հասմիկը։ Շատ չանցած նրանք ձանձրացան խաղալուց, դուռը ներսից բանալիով փակեցին և իսկույն անկողին մտան։*

*Հրանտիկը քնեց, իսկ Հասմիկի քունը չէր տանում։ Նա նստել էր իր փոքր կողավոր մահճակալի մեջ։ Նրա մազերի կարճ հյուսքերը վեր էին ցցվել՝ ճագարի փոքրիկ ու կեռ պոչի նման։*

*Հանկարծ, ճաշասենյակում դաշնամուրը սկսեց նվագել։ Հասմիկը զարմացավ ու համարյա շշուկով ձայն տվեց եղբորը։*

*— Հրանտի՛կ, ա՛յ, Հրանտիկ...*

*Եղբայրն արթնացավ։*

*— Ի՞նչ...*

*— Հրանտի՛կ ջան, վախենում եմ։*

*— Ինչի՞ց ես վախենում։*

*— Երբ դու քնել էիր, դաշնամուրը սկսեց նվագել։ Եղանակ չէ, հենց այնպես, ասես մատներով տնկտնկացրին։*

*— Քեզ թվացել է,— ծոր տվեց Հրանտիկն ու շրջվեց կողքի վրա, և այն է պատրաստվում էր քնել, երբ նորից կրկնվեց...*

*— Ա՛յ... ա՛յ,— բացագանչեց Հասմիկը, ամուր փակեց աչքերը և վախից վերմակը քաշեց երեսին։*

*«Ո՞վ կարող է լինել» մտածեց Հրանտիկը և շտապ իջավ մահճակալից։ Նա զգույշ, ոտքի ծայրերի վրա գնաց ճաշասենյակ։ Լույսը վառեց։*

*Դաշնամուրի կափարիչը բաց էր։ Մի բան թրմփոցով վերևից ընկավ ստեղների վրա. նրանք խուլ ծլնգացին ու նորից լռություն տիրեց։*

*— Հասմի՛կ, մեր փիսոն է, այդ նա էր նվագում,— ուրախ ձայն տվեց Հրանտիկը։*

*— Փիսո՞ն,— զարմացավ Հասմիկը։ Նա վերմակը ետ քաշեց երեսից.— Դու ճիշտ չես ասում, փիսոն չի կարող նվագել։*

*— Ազնիվ խոսք, ես իմ աչքով տեսա։*

*— Բայց ինչո՞ւ էր բարձրացել դաշնամուրի վրա...*

*— Գուցե մո՞ւկ էր տեսել,— պատասխանեց Հրանտիկը։ Հասմիկն իջավ մահճակալից։*

*Երեխաներն սկսեցին փնտրել կատվին։ Նրանք շատ զարմացան, երբ տեսան նրան։ Կատուն, մի անկյունում կծկված, երկու թաթով դեղի սրվակը բռնած, մեծ ոգևորությամբ լիզում էր։*

*— Վա՜յ, այս ի՞նչ է,— զարմացավ Հրանտիկը։*

*Այդ միջոցին դուռը բախեցին։*

*— Մայրի՛կն է... մայրի՛կն է,— ուրախացավ Հասմիկը և սկսեց արագիլի նման մի ոտքի վրա այս ու այն կողմ թռչկոտել։*

*Երբ մայրիկը ներս եկավ, նրանք մեկը մյուսին հերթ չտալով, պատմեցին ամեն ինչ։ Մայրիկը բացատրեց նրանց։*

*Դեղով լի սրվակը դրված էր եղել դաշնամուրի վրա։ Երեխաները նվագելուց հետո մոռացել են կափարիչը իջեցնել։ Կատուն դեղի հոտն առնելով, ցատկել է ստեղների վրա ու դրանից էլ ձայներ է դուրս եկել։*

*— Մի՞թե փիսոն դեղ կխմի,— հարցրեց Հրանտիկը։*

*Մայրիկը ժպտաց ու հետո ավելացրեց.*

*— Այդ դեղը պատրաստում են մի տեսակ բույսից, որն անչափ դուր է գալիս կատուներին. դրա համար էլ այդ բույսը կոչվում է «կատվախոտ»։*

*Հասմիկը գրկեց կատվին ու ասաց.*

*— Փիսո՜ ջան, ի՜նչ լավ էիր նվագում...*

*Մայրիկը ծիծաղեց։*

*Քիչ հետո երեխաները քնեցին։ Քնեց և մայրիկը։ Ննջասենյակում խոր լռություն տիրեց։ Ճաշասենյակից լսվում էր միայն կատվի մռլտոցը, որը երևի շարունակում էր լիզել դատարկ սրվակը։*

# ՎԱՍԻԼԻ ԳՐԻԳՈՐԵՎԻՉ ՊԵՐՈՎ

Վասիլի Գրիգորևիչ Պերովն անցյալ դարի վաթսունական թվականների ռուսական առաջավոր արվեստի խոշորագույն ներկայացուցիչն է: Իր գեղարվեստական կրթությունը նա ստացել է Մոսկվայի գեղանկարչության և քանդակագործության ուսումնարանում: Հետագայում նա ուսումնարանի ականավոր պրոֆեսորներից մեկն էր: Այնտեղ նա դաստիարակել է ռուսական շատ գեղանկարիչների՝ Կ. Կասատկինին, Ս. Կորովինին, Մ. Նեստերովին և ուրիշներին:

Արդեն իր առաջին նկարներում Պերովը ճշմարտացի պատկերում է կյանքը, քննադատում իր ժամանակի կարգերը: Նա առաջինն էր, որ իր գործերով արտացոլեց ռուս գյուղացու թշվառ դրությունը:

Պերովը նշանավոր դիմանկարիչ է: Նա թողել է շատ ռուս առաջավոր մարդկանց դիմանկարները: Դրանք մինչև այսօր էլ զարդարում են Մոսկվայի Տրետյակովյան պատկերասրահի դահլիճները: Պերովի լավագույն նկարները՝ «Գյուղական թափորը զատկին», «Վերջին պանդոկը ուղեկալում», «Մեռելի հուղարկավորությունը», «Եռյակը» հայտնի են բոլորին: «Մեռելի հուղարկավորությունը» հուզական նկարում Պերովը պատկերում է գեղջկուհու վիշտը, որը թաղում է ընտանիքի կերակրող ամուսնուն: Սայլի վրա, նոր դագաղին սեղմված, նստած են որբացած երկու երեխան, իսկ շուրջը ցրտաշունչ ու ձյունածածկ դաշտն է: Մռայլորեն ու գլխահակ քայլում է ձին: Այդ տխուր հուղարկավորությանն ուղեկցում է միայն ընտանիքի միակ բարեկամը՝ շունը: Երեխաների հուզիչ կերպարներ է ստեղծել Պերովն իր մյուս՝ «Եռյակը» հռչակավոր նկարում: Ձմռան մի ցուրտ օր, Մոսկվայի խորդուբորդ փողոցներից մեկով արհեստանոցում աշխատող երեք երեխա ջուր են կրում սառցակալած տակառով: Ուժից վեր աշխատանքի ծանրությունը զգացվում է նրանց գունատ ու տանջահար դեմքերին:

Պերովի նկարները պարզ են, խորաթափանց և հասկանալի ժողովրդին:

Այս տարի հունվարին լրանում է Պերովի ծննդյան 120 տարին:

*Ն. ԱՂԱՄԱԼՅԱՆ*



«Մեռելի հուղարկավորությունը»:

*Գործ նկարիչ՝ Վ. Գ. ՊԵՐՈՎԻ*

# ՍԻՆՈՊԻ ՃԱԿԱՏԱՄԱՐՏԸ



Գործ նկարիչ՝ ԲՈԳՈԼՅՈՒԲՈՎԻ

1853 թվականին մեծ պատերազմ սկսվեց Թուրքիայի և Ռուսաստանի միջև, որը տևեց երեք տարի։ Այս պատերազմում մեծ դեր խաղաց Սևծովյան նավատորմը։ Հենց պատերազմի սկզբում նավատորմի առաջ մարտական խնդիր էր դրված. Ղրիմից զորք տեղափոխել Կովկասի ռազմաճակատ, ջախջախել թուրքական ռազմական նավատորմը։ Այս դժվարին խնդիրը նավատորմը կատարեց վիցե-ադմիրալ Նախիմովի գլխավորությամբ...

Թուրքական ռազմածովային ուժերն ամբողջապես կենտրոնացած էին Սինոպի նավահանգստում։ 1853 թվականի նոյեմբերի 11-ին Նախիմովի էսկադրան մտավ Թուրքիայի ծովային սահմանները, որպեսզի անվտանգ դարձնի թշնամու նավատորմը։ Նավարկության ժամանակ անսպասելի փոթորիկ բարձրացավ և Նախիմովի էսկադրայից յոթ նավ վնասվեց։ Նրա հրամանատարության տակ մնաց նավատորմի փոքր մասը։ Այդ ուժերով նա կարող էր միայն հսկել և խանգարել թուրքական ծովային ուժերին. իսկ հարձակման անցնելը հնարավոր էր այն ժամանակ, երբ կստացվեին օգնական ուժեր։ Նախիմովին հայտնի դարձավ, որ թշնամու նավատորմը պատրաստվում է գրոհել իր էսկադրայի վրա։ Թուրքերը երկու անգամ ավելի էին, իսկ նավահանգիստը պաշտպանում էր ծովափնյա հրետանին։ Նախիմովի համար մի ելք էր մնում. հանկարծակի ու սրընթաց հարձակումով ճակատամարտը շահելը։

1853 թվականի նոյեմբերի 29-ին ռուսական փոքրաթիվ նավախումբն անսպասելի հայտնվեց Սինոպի ծոցում։ Հաջորդ օրը սկսվեց կատաղի ճակատամարտը։ Թուրքական նավատորմին շեշտակի հարվածներ էին հասցնում ռուսական հերոս նավաստիներն ու սպաները։ Ադմիրալը «Մարիա» նավի ձեղնախցիկից ղեկավարում և հեռադիտակով հետևում էր մարտական գործողություններին։ Մեկը մյուսի հետևից օդ էին թռչում թշնամու ջախջախված նավերի բեկորները։

Թուրքական հրամանատարությունն ավելի ու ավելի էր ուժեղացնում առափնյա հրետանու կրակը. բայց արդեն ուշ էր։ Թշնամու նավատորմի ջախջախումից հետո Նախիմովն իր նավերի հզոր կրակը կենտրոնացրել էր ծովափնյա հրետանու և քաղաքի վրա։

Գրեթե ամբողջապես ոչնչացվել էր Սինոպի առափնյա հրետանին և միայն նավահանգստից հատ ու կենտ կրակոցներ էին լսվում։ Այդ ժամանակ հայտնըվեց ռուսական օժանդակ էսկադրան։ Նրա անձնակազմը թուրքական ռազմածովային ուժերի լրիվ կատար պարտության վկան եղավ։

Նրա 3000 նավաստիներ զոհ գնացին։ Այդ կռվում գերի ընկան շատ թուրք նավաստիներ ու սպաներ։ Նրանց մեջ էր նաև վիրավորված ծովակալ Օսման փաշան։

Մի քանի օր հետո Նախիմովի էսկադրան անվնաս վերադարձավ Սևաստոպոլ։ Քաղաքի բնակչությունը և Սևծովյան նավատորմի անձնակազմը ջերմորեն դիմավորեցին լեգենդար հերոս Նախիմովին։

Ռուսական նավատորմի հաղթանակը Սինոպի ճակատամարտում, ռուս նավաստիների վարպետության, քաջության և Նախիմովի ռազմական մեծ հմտության փայլուն արդյունքն է։

Վ. ՄԵԼԻՔՍԵԹՅԱՆ

(Պատմական գիտությունների թեկնածու)

# ԳԱՌՆԻԻ ՊԵՂՈՒՄՆԵՐԸ

Հ. ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ

*(Պատմական գիտությունների թեկնածու)*

Գառնի ամրոցը, որն ընկած է անդնդախոր ձորի միջից վեր խոյացող մի եռանկյունաձև հրվանդանի վրա, հիմնադրվել է 2200—2300 տարի սրանից առաջ: Գառնին երկու կողմից պաշտպանված է բարձր քարափներով, իսկ երրորդ կողմից տասնհինգից քսան մետր բարձրություն ունեցող պարսպով: 314 մետրանոց պարիսպն ունի տասնչորս աշտարակ: Նրա պատերի հաստությունը երկու մետրից ավելի է: Պարիսպը դրված է կրաշաղախով լցված հիմքի վրա: Քարերը շարքի մեջ կապված են ոչ թե կրի շաղախով, այլ երկաթե գամերով: Փակագծի ձև ունեցող գամերի ծայրերը մտնում են փորվածքների մեջ և քարերի հետ միացվում արճճի ձուլվածքով: Պարիսպը կառուցված է սրբատաշ բազալտից: Դրանց մեջ կան քարեր, որոնք կշռում են վեց-յոթ տոննա:

Ամրոցն ունեցել է մի մեծ ու հոյակապ մուտք: Դրանով, հատկապես հանդիսավոր օրերին, ամրոցից դուրս են եկել իշխանական շքախմբերն ու բերդապահ զորքերը և մասնակցել զորահանդեսներին: Գառնին թագավորանիստ ամրոց և զորակայան է եղել: Նա շատ անգամ է հարձակման ենթարկվել թշնամու զորքերի կողմից, ետ մղել նրանց գրոհները: Չնայած դրան, թշնամիները երեք անգամ խորտակել են ամրոցի պարիսպները և գրավել ու կողոպտել այն: Բայց շատ չանցած հայերը նորից ջարդել ու դուրս են մղել օտարերկրյա նվաճողներին ու վերականգնել ավերված ամրոցը:



Մոզաիկա, որը վերջերս գտնվել է Գառնիում, պեղումների ժամանակ:

Հայկական ամրոցներից և քաղաքներից քչերն են Գառնիի չափ երկարատև կյանք ունեցել: Գառնին կանգուն է մնացել 1800 տարի:

Պեղումների ընթացքում բացված ավերակներից գտնված են մեծ քանակությամբ իրեր: Նրանց միջոցով կարելի է ծանոթանալ ամրոցի բնակչության կենցաղին և կուլտուրային: Կան երկաթյա և բրոնզյա զենքեր, աշխատանքային գործիքներ, կավե ամանների տեսակներ, շատ զարդարանքներ, դրամներ, ապակե սրվակներ, որոնցից մի քանիսը պատրաստված են մարդկային դեմքերի նմանությամբ: Գտնված են նաև մարմարյա արձանիկներ և շենքի զարդարանքի բեկորներ:

Բացված տներից շատերն ունեն հայկական թոնիրներ, ամբարներ և կարասներ: Վերջիններից մի քանիսը լցված են եղել ալյուրով:

Այս իրերը ցույց են տալիս, որ ամրոցի տերերը պարապել են արհեստներով, երկրագործությամբ, այգեգործությամբ, մշակել են հացահատիկ: Նրանք առևտրական կապեր են ունեցել դրսի երկրների հետ: Պեղումները պարզել են նաև երկու հազար տարի առաջ ապրած բնակիչների հագուստի ձևերը: Նրանք կրել են սանդալներ: Կանայք իրենց գլխարկները, մազերը և իրանը զարդարել են շքասեղներով, ծովային խեցիներով և բրոնզե տարբեր ձևեր ունեցող կախիչներով:

2000 տարի առաջ ամրոցի ներսում կառուցվել է հեթանոսական մի սյունազարդ տաճար: Տաճարն իր ճարտարապետական բարձր արվեստով ու քանդակների շքեղությամբ ամենուրեք մեծ հռչակ է ստացել: Տաճարը լուսամուտներ չունի: Լույսը ստացել է կտուրից և դռնից: Հատակը գետնի մակերեսից երկու մետր բարձր է: Բոլոր կողմերից սյուներ ունի: Սյուներն ունեն բազաներ և հոյակապ քանդակներով զարդարված խոյակներ: Սյուների վրա նստած է երկթեք ծածկը, որը պատած է եղել կղմինդրով: Ինը աստիճան տանում են դեպի տաճարի մուտքը: Աստիճանների աջ ու ձախ կողմերում քանդակված են մարդիկ: Սրանք կարծես թե իրենց ուսերի վրա պահում են իրենցից վերև գտնվող տաճարի քարերը:

Շենքը զարդարված է եղել անզուգական քանդակներով: Զարմանալի հոգատարությամբ և ճարպկությամբ են դրված շարքի ահռելի մեծություն ունեցող սրբատաշ և գեղեցիկ փորագրված քարերը: Ահա այդ քարերից մեկը. նրա վրա պատկերված է խաղողի վազը և ողկույզը: Քիվի բոլոր քարերի վրա քառակողմ ատամների շար է արված: Նրանցից շատերի վրա բարձր դիրքով քանդակված են առյուծի գլուխներ: Դրանք կարծես թե կենդանի լինեն: Թվում է, թե այժմ կարող են շունչ առնել և մեկ ոստյունով պոկվել քարից ու թռչել դեպի խոր ձորը...

Հեթանոսական տաճարի քարերից շատերի վրա քանդակված են կաղնու և արմավենու տերևներ, մրգերի տեսակներ, մարգարտաշարեր...

Այս տաճարը մի գեղեցիկ մարգարիտ է Հայաստանի հնագույն հուշարձանների շարքում:

## ՌՈՒՍԼԱՆ ԵՎ ԼՅՈՒԴՄԻԼԱ

Ծովի ափին՝ կաղնի դալար,
Ոսկե շղթա կաղնու բոլոր,
Ուսյալ կատուն է միալար
Այնտեղ շրջում գիշեր ու զօր.
Քայլում է աջ՝ երգ է հյուսում,
Քայլում է ձախ՝ հեքիաթ ասում:

Այսպես է սկսվում ռուս հանճարեղ բանաստեղծ Ալեքսանդր Պուշկինի «Ռուսլան և Լյուդմիլա» պոեմը, որը լույս է ընծայել Հայպետհրատի մանկա-պատանեկան գրականության բաժինը:

Իշխան Վլադիմիրն իր կրտսեր աղջկան՝ Լյուդմիլային տվել է քաջ Ռուսլանին և ահա հարսանեկան ճոխ սեղանի մոտ զվարճանում է: Երգիչներն անվերջ փառաբանում են Ռուսլանին և Լյուդմիլային: Պալատը թընդում է զվարթ ձայներից: Միայն երեք կըտրիճ չեն մասնակցում այդ ուրախությանը: Նրանք Ռուսլանի մրցակիցներն են. երեքն էլ սիրում են Լյուդմիլային և ամեն մեկն աշխատում է ինքը տիրել նրա սրտին: Քեֆը վերջանում է, հյուրերն ու երգիչները հեռանում են: Հարազատները Լյուդմիլային առաջնորդում են ննջարան: Քիչ հետո լսվում է ահեղ որոտ: Ննջարանի ճրագը հանգչում է. շուրջը մթնում: Խավարի միջից լսվում է տարօրինակ մի ձայն և ինչ-որ մի սև ուրվական թռչում է երկինք: Ռուսլանը սարսափած ձեռքերը տարածում է մութ սենյակում, բայց Լյուդմիլան չկա արդեն. նրան փախցրել են... Իշխան Վլադիմիրը կանչում է բոլորին և հայտարարում՝ ով որ աղջկան գտնի ու բերի, նա կլինի իր փեսան: Առաջինը Ռուսլանն է ուզում գնալ, ապա նրա մրցակից մյուս երեք կտրիճը...



Չորս երիտասարդ մի ամբողջ օր միասին ճանապարհ գնալուց հետո, բաժանվում են և գնում տարբեր ուղղություններով:

Թե որքան տառապանքներ է կրում Ռուսլանը Լյուդմիլային գտնելու համար, կարելի է իմանալ գրքից: Նրա ամենամեծ կռիվը լինում է Չերնոմորի հետ, որի հրամանով փախցրել են Լյուդմիլային: Ռուսլանը մի ձեռքով նրա մորուքից կախված, մյուսով բռնած թրով աշխատում է կտրել մորուքը: Վերջապես մորուքը հոգնում, իջնում է գետին և հանձնվում Ռուսլանին:

Ռուսլանը կտրում է մորուքը: Վերջինս նրան հայտնում է Լյուդմիլայի տեղը: Ռուսլանը գտնում է Լյուդմիլային և տանում իշխան Վլադիմիրի պալատը: Իշխանը ուրախանում է աղջկա գտնվելու և փեսայի քաջության համար: Քաջությունը հաղթում է ամեն տեսակ կախարդանքին:

Պոեմը շատ լավ է թարգմանել Պարույր Միքայելյանը:

Ռ. ՂԱՐԻԲՅԱՆ

# ՀԵՏԱՔՐՔԻՐ ԺԱՄԱՆՑ

## ԿՐԻՊՏՈԳՐԱՄԱ

Կրիպտոգրամայի լուծման համար հարկավոր է գտնել նշված հարցերի պատասխանները և դրանց տառերը տեղադրել համարներով ցույց տրված համապատասխան վանդակներում: Անհրաժեշտ բառերը գտնելու և ճիշտ դասավորելու դեպքում դուք կկարդաք շնորհավորանք և հայտնողի անունը:

1) Շախմատային տերմին — 1, 38, 24. 2) Գետ Աֆրիկայում — 32, 40, 39, 33, 15. 3) Վրացական կինոֆիլմ — 6, 12, 37, 11, 20. 4) Մանկական ամսագիր — 29, 19, 3, 26, 21, 28. 5) Պատմական գրահանավ — 17, 7, 9, 31, 34, 25. 6) «Սասունցի Դավիթ» էպոսի հերոսներից — 36, 5, 23, 22. 7) Ասիական պետություն — 30, 4, 35, 13. 8) Ձայնի տեսակ — 16, 27, 2, 14, 41. 9) Խորը գոգավորություն լեռներում— 10, 8, 18:



## Ի՞ՆՉ Է ԳՐԵԼ ԱՆԱՀԻՏԸ



Փորձեցեք կարդալ, թե ինչ է գրել Անահիտն իր չմուշկներով:

*Կազմեց՝ Գ. ՄԱՆՈՒԿՅԱՆ*

## ԲՈԼՈՐ ՈՒՂՂՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՎ

Դոմինոյի այս քարերը դասավորել այնպես, որ ստացվի քառակուսի և բոլոր ուղղություններով, ինչ-



պես նաև անկյունագծերով, նրանց վրա եղած կետերի գումարը կազմի 12:

*Կազմեց՝ Հ. ԽՈՒԴՈՅԱՆ*

# ԽԱՂԵՐ

### Ընձուղտի, թե՞ մկան





Ի՞նչ եք կարծում, ընձուղտի պարանոցի ողերն են շատ, թե՞ մկան։

### Հիսուն միավոր

*Սուրիկը օղակի անդամներին միշտ նոր ու հետաքրքիր խաղեր էր սովորեցնում։ Եվ ահա օղակի հերթական հավաքույթում սկսվեցին խաղերը։*

*Սուրիկն օղակի տասը պիոներին բաժանեց երկու հավասար խմբի և խորությամբ շարք կանգնեցրեց իրարից չորս քայլ հեռու։*

*Նա ամեն մի շարքի առջև, հատակի վրա, հինգ քայլ իրարից հեռու դրեց ֆաներայի մեկական կտոր՝ երեսուն քառակուսի սանտիմետր մեծությամբ, ամեն մեկը՝ երեք գույնի։ Կենտրոնի կարմիր գույնի վրա գրված էր 3, միջին մասի կապույտ գույնի վրա՝ 2, իսկ դրան շրջապատող մասի գույնի վրա՝ 1 թվանշան։*





*— Դե՛, հանեցեք ավազով լի տոպրակները,— դիմեց Սուրիկը պիոներներին։*

*Սուրիկի պատվերով օղակի անդամները, նախօրոք, մեկը մյուսից թաքուն, պատրաստել էին այդ տոպրակները և մեծ հետաքրքրությամբ սպասում էին, թե ինչ պետք է անեն։*

*Եվ ահա պարզվեց գաղտնիքը։ Դրանք նոր խաղի համար էին։*

*— Տոպրակները հերթով և շատ զգույշ պետք է նետեք տախտակի վրա. աշխատեցեք լավ նշան բռնել, որ ընկնի կենտրոնի 3-ի վրա. դրանով դուք ավելի շատ միավորներ կշահեք։ Հաղթող կհամարվի այն խումբը, որը շուտ կհավաքի 50 միավոր։*

*Պիոներները հերթով սկսեցին տախտակի վրա նետել ավազով լի փոքրիկ տոպրակները, իսկ Սուրիկը գրանցում էր, թե քանի՞ միավոր շահեց ամեն մեկը։*

*Յուրաքանչյուր խումբն աշխատում էր հաղթող դուրս գալ։*

### Շախմատի ֆիգուրներով



*Տեղավորեցեք շախմատի սպիտակ ֆիգուրները սևերի տեղը և հակառակը՝ օգտագործելով ազատ վանդակը։ Թույլատրվում է ֆիգուրը անցկացնել մյուսի վրայով, եթե հանդիպակաց վանդակն ազատ է։*

*Այս խաղը կարելի է պատրաստել ստվարաթղթի վրա և դնել պիոներական սենյակում, որ երեխաները միշտ խաղան։*

Վ. ՊԵՏՐՈՍՅԱՆ

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկը՝ նկ. Մ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆԻ



*Խմբագիր՝* ՏԱԼՅԱՆ Վ.
*Խմբագրական կոլեգիա՝* ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԽԱՉԱՏՐՅԱՆ Հ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Պ., ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՕՀԱՆՅԱՆ Ա.

„Пионер“ на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Маркса 21
*Հասցեն՝ Երևան, Մարքսի փողոց № 21, Հեռախոսներ՝ 2-44-83, 2-59-06*

*ՎՖ 08369։ Պատվեր 999։ Տիրաժ 5000 Տպագրական 2½ մամուլ։ Ստորագրված է տպագրության 30/XII 1953 թ.*

*Հայպոլիգրաֆհրատի № 1 տպարան, Երևան, Ալավերդյանի փող. № 65։*



# ՄԵՐ ՕՐԱՑՈՒՅՑԸ



### Կարլ Լիբկնեխտ և Ռոզա Լյուքսեմբուրգ

Երեսունհինգ տարի առաջ, 1919 թվականի հունվարի 15-ին Բեռլինի փողոցներում մարտեր էին տեղի ունենում: Բանվորները պայքարում էին կապիտալիստական բռնապետության



դեմ: Նրանց առաջնորդում էին Գերմանիայի Կոմունիստական պարտիայի ղեկավարներ՝ Կարլ Լիբկնեխտը և Ռոզա Լյուքսեմբուրգը: Կառավարական բանակի սպաները ձերբակալեցին անվեհեր ռևոլյուցիոներներին և գազանաբար սպանեցին նրանց:



Կ. Լիբկնեխտը երիտասարդ հասակից ուսումնասիրում է մարքսիզմը: 1912 թվականին բանվորները նրան ընտրում են պառլամենտի անդամ: Նա ամենուրեք պաշտպանում է բանվոր դասակարգի շահերը: 1914 թվականին Լիբկնեխտը պայքարում է պատերազմի և նրա հրահրողների դեմ: Նա Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի ջերմ պաշտպաններից մեկն էր:

Ռոզա Լյուքսեմբուրգը Լիբկնեխտի հասակակիցն էր: Նա տասնհինգ տարեկան էր, երբ սկսեց մասնակցել ընդհատակյա ռևոլյուցիոն կազմակերպությունների աշխատանքին: Նա թերթի խմբագիր էր: Թերթի էջերում ժողովրդին սզատության կոչ էր անում: Լյուքսեմբուրգը տարիներ շարունակ շրջել է Գերմանիայի քաղաքներն ու ժողովրդի առջև ռևոլյուցիոն ճառեր արտասանել: Ո՛չ բանտը, և ո՛չ էլ աքսորը չեն ընկճել նրան:

Կարլ Լիբկնեխտի և Ռոզա Լյուքսեմբուրգի հիշատակը ապրում է աշխարհի բոլոր աշխատավորների սրտերում:

### Ժողովրդի զավակը

*(Ծննդյան 105-ամյակը)*

175 բուլղարացիներից բաղկացած ջոկատը մեծ բանաստեղծ Խրիստո Բոտևի ղեկավարությամբ զինված նավակում սկսեց թյուրքերի դեմ երկիրն ազատագրելու համար: Պայքարն անհավասար էր: Թշնամին ուժեղ էր: Բոտևի ջոկատը Բալկանյան լեռների մոտ ծանր պարտություն կրեց. 1876 թվականի մայիսի 20-ին Բոտևն ընկավ հերոսական մահով: Դա 77 տարի առաջ էր, երբ բուլղար ժողովուրդը տառապում էր թյուրք բռնակալների ծանր լծի տակ:

Բոտևը ծնվել է 1849 թվականի հունվարի վեցին: Ուսումնասիրելով



ռուս ռևոլյուցիոն գրողների ու մտածողների երկերը, նա դառնում է իր հայրենիքի ազատագրական շարժումների ղեկավարը. բոցավառ ելույթներ է ունենում և բուլղար ժողովրդին պայքարի կոչում թյուրքական բռնապետության դեմ:

Բոտևի գրած բանաստեղծություններն ու պոեմները այսօր էլ կարդացվում են մեծ հետաքրքրությամբ: Նրա երկերը բուլղարական գրականության փառքն ու պարծանքն են կազմում: Բոտևի «Հայդուկներ», «Պայքար», «Հաջի Դիմիտր» գործերում պատկերված է բուլղարական ժողովրդի կյանքն ու հերոսությունը:

### Ուրալյան լեռների երգիչը

Դուք լսել եք, թե որքան գեղեցիկ են Ուրալյան լեռներն ու դաշտերը, որքան խիզախ են այնտեղ ապրող մարդիկ: Այդ ամենի մասին լավ է պատմում ռուս նշանավոր գրող Պավել Պետրովիչ Բաժովը:



Բաժովը ծնվել է Ուրալում 1879 թվականին և ապրել այնտեղ: Նրա ծնողները հանքագործներ էին: Ապագա գրողը դեռ իր մանկության օրերին տեսնում է հանքագործների աշխատանքը, լսում գեղեցիկ հեքիաթներ Ուրալի մասին: Նա տարիներ շարունակ հավաքում է այդ հեքիաթները և օգտագործում պատմվածքներ ու վիպակներ գրելու ժամանակ:

1924 թվականին տպագրվեց Բաժովի առաջին գիրքը: Բաժովին մեծ ժողովրդականություն բերեց «Մալախիտե տուփիկ» գիրքը, որը լույս տեսավ 1936 թվականին: Այդ գրքի վրա հեղինակն աշխատել է 15 տարի: Սովետական կառավարությունը բարձր գնահատեց գրողի կատարած աշխատանքը և արժանացրեց Ստալինյան մրցանակի ու պարգևատրեց Լենինի շքանշանով: Ժողովուրդը նրան երկու անգամ ընտրեց ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատ:

Պավել Պետրովիչ Բաժովը վախճանվեց 1950 թվականի դեկտեմբերի երեքին:

ՆՈՐ ՏԱՐՎԱ ՆԱԽՕՐՅԱԿԻՆ





Ֆոտո՝ Հ. ՀԵՐԵՔՅԱՆԻ